## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հապավումներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**10** ՀՈԿՏԵՄԲԵՐ 1974
ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
**«Ленинян угнов» — теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ՔԱՌՈՐԴ ԴԱՐ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՈՒՂԻՈՎ

## ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

### ԳԴՀ-Ի 25-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ 1974 Թ. ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 6-ԻՆ, ԲԵՌԼԻՆՈՒՄ ԿԱՅԱՑԱԾ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏՈՒՄ

*Թանկագին ընկեր Հոնեկե՛ր։*

*Գերմանիայի սոցիալիստական միասնական կուսակցության կենտրոնական կոմիտեի հարգելի անդամնե՛ր։*

*Գերմանական Դեմոկրատական Հանրապետության ժողովրդական պալատի հարգելի դեպուտատնե՛ր, Ազգային ճակատի Ազգային խորհրդի անդամնե՛ր։*

*Թանկագին ընկերնե՛ր և բարեկամնե՛ր։*

*Այսօր մենք հավաքվել ենք նշելու մի տարելից, որը պատմական խոր իմաստ ունի։*

*Կարլ Մարքսի և Ֆրիդրիխ Էնգելսի հայրենիքում առաջին բանվորա-գյուղացիական պետության ծնունդը կարևոր ուղենիշ դարձավ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի շնորհիվ մարդկության համար բացված ճանապարհով համաշխարհային սոցիալիզմի զարգացման ասպարեզում։*

*Դա այդպես է, որովհետև այն նշանակում էր արմատական բեկում ձեր երկրի աշխատավորների ճակատագրում, նրանց հաղթանակը միլիտարիզմի և ֆաշիզմի դեմ հանուն սոցիալիստական իդեալների հաղթության մղված հեղափոխական պայքարում։*

*Դա այդպես է, որովհետև այն նշանակում էր սոցիալիստական երկրների համագործակցության ընդհանուր պոտենցիալի էական մեծացում։*

*Դա այդպես է, որովհետև այն հսկայական սկզբունքային նշանակություն ունեցավ Եվրոպայի պատմության մեջ, մայրցամաքում միջազգային հարաբերությունների զարգացման ասպարեզում։*

*Դա այդպես է, որովհետև արդյունաբերական տեսակետից զարգացած երկրում սոցիալիզմի կառուցման ձեր փորձը էապես հարստացրեց մարքս-լենինյան միտքը, լավ նեցուկ է ծառայում նաև կապիտալի երկրներում մեր դասակարգային եղբայրների համար։*

*Կյանքը լիովին հաստատեց Վլադիմիր Իլյիչ Լենինի իրավացիությունը, որը քանիցս ասել է, թե կոմունիստների ընդհանուր գործի համար որքան կարևոր կլինի սոցիալիստական կարգերի հաղթանակը Գերմանիայում։*

*Եվ հասկանալի է, որ ձեր հանրապետության հոբելյանը ձեզ հետ նշում են*

Սովետական Միության և մյուս եղբայրական երկրների աշխատավորները։ Այն դարձել է մեր ընդհանուր տունը, բոլոր նրանց տունը, ովքեր կենաց ու մահու կռիվ են մղել ֆաշիզմի դեմ, պաշտպանել են խաղաղությունը, ովքեր պայքարել և պայքարում են դեմոկրատիայի և սոցիալիզմի իդեալների հաղթանակի համար։

Ինձ պատիվ է վիճակվել գլխավորելու ՍՍՀՄ կուսակցական-կառավարական պատվիրակությունները Գերմանական Դեմոկրատական Հանրապետության 15-ամյակի և 20-ամյակի տոնակատարություններում։ Այդ հոբելյաններից յուրաքանչյուրը նոր փուլ էր նշանավորում առաջադիմության ուղիով ձեր առաջընթացում։ Եվ ահա հիմա 25-րդ տարեդարձն է։ Դուք այն դիմավորում եք, հիրավի, ակնառու նվաճումներով, որոնց մասին այստեղ այնքան լավ խոսեց ընկեր Էրիխ Հոնեկերը։ Ամեն մի երկիր, ամեն մի ժողովուրդ կկարողանար իրավամբ հպարտանալ դրանցով։

Ձեր կատարածը գնահատելու համար պատմական մասշտաբ է հարկավոր։

Գերմանիայի կառավարող դասակարգերը դարեր շարունակ արմատավորել են բռնության և ռասայական գերազանցության գաղափարախոսությունը։ Նրանց ագրեսիվ քաղաքականությունը ծանր բեռ է եղել ո՛չ միայն հարևան երկրների ժողովուրդների, այլև հենց գերմանացիների բախտի համար։ Այստեղից, եվրոպական մայր ցամաքի կենտրոնից են սկսվել ավերիչ պատերազմները, հրո ալիք է տարածվել Գերմանիայից դեպի արևելք և արևմուտք ընկած երկրների խաղաղ քաղաքների և գյուղերի վրա։ Եվ յուրաքանչյուր արյունալի ընդհարումից հետո, երկու կողմերի նոր զոհերից հետո երկպառակությունն ու թշնամանքը սրվել են։ Կարելի է ասել՝ ատելության պատմական կուտակում էր տեղի ունենում։ Գերմանական իմպերիալիզմի ծնած չարիքի հրեշավոր գագաթնակետը եղավ ֆաշիզմը, որը ահավոր աղետներ բերեց Եվրոպայի ժողովուրդներին, այդ թվում նաև գերմանական ժողովրդին։ Երկրորդ համաշխարհային պատերազմում ֆաշիստական ագրեսիան է՛լ ավելի խորացրեց անդունդը Գերմանիայի և մյուս երկրների միջև։

Մենք՝ կոմունիստներս, կարող ենք խոր գոհունակության զգացում ապրել այն առթիվ, որ հենց սոցիալիզմը և միայն նա կարողացավ կտրել այդ «գորդյան հանգույցը»։ Հենց սոցիալիզմը՝ ի դեմս աշխարհում առաջին սոցիալիստական տերության, վճռական դեր խաղաց ռազմի դաշտերում, ֆաշիզմի չարանենգ ուժերի ջախջախման գործում։ Հենց սոցիալիզմը և միայն նա, որոշելով ԳԴՀ-ի բախտը նրա ժողովրդի կամքով, ձեր երկիրը դուրս բերեց ռեակցիայի, ագրեսիայի և պատերազմի մահաբեր ջրապտույտից, այն դարձրեց Եվրոպայի խաղաղության ամրապնդման կարևոր գործոններից մեկը։

Ջախջախելով ֆաշիզմը, սովետական բանակը, եվրոպական մյուս ժողովուրդների հետ մեկտեղ, ազատագրեց նաև գերմանական ժողովրդին։ Լենինի կուսակցությունը, սովետների երկիրը խաղաղության և բարեկամության ձեռք մեկնեցին գերմանացի աշխատավորներին։ Իսկ Թելմանի կուսակցությունը ձեռնամուխ եղավ նոր, արդարացի ու մարդասիրական հիմունքներով իր ժողովրդի կյանքի վերափոխման դժվարին և ազնիվ խնդրի լուծմանը։

Քաղաքական, սոցիալական և կուլտուրական ճակատներում ԳՍՄԿ-ի այսօրվա հաղթանակներում կան Կարլ Լիբկնեխտի, Ռոզա Լյուքսեմբուրգի, Էռնստ Թելմանի և ուրիշ շատ խիզախ ինտերնացիոնալիստ մարտիկների հոգու և սրտի մասնիկները։



Այսօր մենք չենք կարող չհիշել նաև նրանց, որոնց «առաջին պահի ակտիվիստներ» են անվանում։ Այդ մարդիկ եկան պատերազմի խրամատներից՝ սովետական բանակի զինվորների հետ, հակաֆաշիստական ընդհատակից, ֆաշիստական համակենտրոնացման ճամբարների փշալարերի ետևից։ Նրանք ունեին Գերմանիայի կոմկուսի անգնահատելի փորձը, միջազգային կոմունիստական շարժման մեջ գործելու փորձը։ Նրանց շուրջը համախմբվեց այն ամեն լավագույնն ու ազնիվը, ինչ այն տարիներին կար Արևելյան Գերմանիայում։

Նրանցից շատերը, ովքեր կանգնած են եղել ԳԴՀ-ի օրորոցի մոտ, արդեն մեզ հետ չեն։ Բայց սերունդների հիշողության մեջ ընդմիշտ կմնան Վիլհելմ Պիկի, Վալտեր Ուլբրիխտի, Օտտո Գրոտևոլի և շատ ուրիշ կոմունիստների ու ոչ կոմունիստների պայծառ անունները, որոնք փառավոր էջեր են գրել գերմանական հողում սոցիալիզմի կառուցման պատմության մեջ։

Հանրապետությունը իր նվաճումների համար պարտական է կոմունիստներին, և առաջին հերթին կոմունիստներին, բանվոր դասակարգի ավանգարդին։ ԳՍՄԿ-ի անսասան հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներին և իդեալներին — ահա թե ինչը ուժ տվեց հաղթահարելու իմպերիալիզմի ու նացիզմի կողմից խեղված երկրի վերափոխման հսկայական դժվարությունները և կառուցելու սոցիալիզմ։

ԳԴՀ-ի բանվոր դասակարգը և բոլոր աշխատավորները սեփական փորձով համոզվեցին, որ մարքս-լենինյան կուսակցության ղեկավար դերն է հասարակական վերափոխումների հաջող իրականացման գլխավոր, որոշիչ գործոնը։ Դա անհերքելիորեն հաստատվեց ձեր երկրի, ինչպես նաև սոցիալիստական մյուս երկրների փորձով։

Հանրահայտ է, թե իմպերիալիստական շրջաններն ինչպիսի համառությամբ էին փորձում ընկճել ձեր հանրապետությունը, թույլ չտալ, որ նա հաստատորեն ամրապնդվի եվրոպական հողում, թույլ չտալ, որ ԳԴՀ-ն միջազգային ճանաչում ստանի որպես սուվերեն պետություն։

Բայց այդ փորձերը ձախողվեցին եղբայրական սոցիալիստական պետությունների համատեղ ջանքերով։ ԳԴՀ-ի միջազգային իրավական ճանաչման պահանջը, որպես ամենակարևոր նպատակներից մեկը, մտցվեց Վարշավայի պայմանագրի մասնակից երկրների բոլոր արտաքին քաղաքական ծրագրային փաստաթղթերում, կոմունիստական կուսակցությունների եվրոպական և միջազգային խորհրդակցությունների որոշումներում։ Պայքարն այդպիսի ճանաչման համար ՍՄԿԿ XXIV համագումարի խաղաղության ծրագրի հիմնական կետերից մեկն էր։ Եվ այն, ինչ պետք է կատարվեր, կատարվեց։ Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունը պատմության մեջ գերմանական աշխատավորների առաջին պետությունը, այսօր իրականում պաշտոնապես ճանաչված է ամբողջ աշխարհի կողմից և իր օրինական տեղն է գրավել Միավորված ազգերի կազմակերպությունում։

Այսօր Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունն ուժեղ և բարգավաճող սոցիալիստական պետություն է, միջազգային կյանքի ակտիվ ու հեղինակավոր մասնակիցը։ Սոցիալիստական աշխարհի բոլոր ազգերը եղբայրաբար հպարտանում են իրենց գերմանացի ընկերների նվաճումներով։ Սա չէ՞, արդյոք, լավագույն պարգևը այն մարդկանց, ովքեր ողբերգական իրադարձությունների անթափանց խավարի, ծանր տարիների մշուշի միջից կարողացան տեսնել հեռուն, ովքեր իրենց բոլոր ուժերը, իրենց ողջ եռանդը նվիրաբերեցին

*ԳԴՀ-ի ժողովրդի սոցիալիստական արդար ապագայի կառուցմանը։ Սա չէ՞, արդյոք, հիանալի փաստարկը հօգուտ սոցիալիզմի՝ որպես խաղաղության և ազգամիջյան ու մարդկային հարաբերությունների ազնվացման մեծ գործոնի։*

*Ահա թե ակամա ինչ ես մտածում այդ առնչությամբ։ Տարիներ շարունակ բուրժուական երկրների կառավարող շրջանները չէին ուզում ճանաչել սովետական պետությունը։ Ստիպված եղան ճանաչել։ Չէին ուզում ճանաչել Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունը։ Ստիպված եղան ճանաչել։ Հրաժարվում էին ճանաչել Վիետնամի Դեմոկրատական Հանրապետությունը։ Վիետնամական ժողովուրդն իր հերոսական պայքարով համաշխարհային ճանաչում նվաճեց իր համար։ Ոմանք մինչև օրս կառչում են սոցիալիստական Կուբայի տնտեսական ու քաղաքական շրջափակման, նրան չճանաչելու քաղաքականությունից։ Ստիպված կլինեն ճանաչել, ասում ենք մենք վստահորեն։*

*Ժամանակը չէ՞, արդյոք, վերջապես, պատմությունից մի հասարակ դաս առնել. սոցիալիզմի երթը օբյեկտիվ պրոցես է։ Այն արտահայտում է ժողովուրդների կամքը, հասարակական զարգացման ներքին պահանջմունքները։ Այն անկասելի է։ Նրա հետ կամա թե ակամա, պետք է հաշվի նստել։*

*Սոցիալիզմը հրաշալի ծիլեր է տվել գերմանական հողում։ Այդ են վկայում ձեր երկրի զարգացման տեմպերն իսկ, որը 25 տարում իր արդյունաբերական արտադրությունն ավելացրել է 8 անգամ և հաստատուն տեղ է գրավում աշխարհի տնտեսապես առավել զարգացած մեկ տասնյակ պետությունների մեջ։*

*Բայց գլխավորը, այնուամենայնիվ դա չէ։ Գերմանիան առաջ էլ էր ինդուստրիալ պետություն։ Սակայն միայն սոցիալիստական ԳԴՀ-ում հաջողվեց խոր փոփոխություններ կատարել աշխատավորների կենսապայմանների մեջ, որոնք այստեղ երկրի լիիրավ տերերն են դարձել։ Վերջ է տրված շահագործմանը, վերացված է արտադրամիջոցների մասնավոր սեփականությունը։ Այդ պայմաններում առաջին անգամ հնարավոր դարձավ ապահովել գլխավորը՝ հանրօգուտ, արժանավայել աշխատանքի ռեալ իրավունքը, լիովին և ընդմիշտ վերացնել գործազրկությունը, աշխատավորներին ազատել այդ ահավոր սպառնալիքից, ապահովել նրանց հավասար վարձատրությունը միևնույն աշխատանքի համար։*

*Միայն սոցիալիստական ԳԴՀ-ում բոլոր քաղաքացիները գիտեն, որ երաշխավորված է իրենց անվճար բուժսպասարկումը, որ նույնիսկ ամենաթանկ և բարդ բուժումը հիվանդի վրա ոչ մի պֆենինգ չի նստում։ Միայն սոցիալիստական ԳԴՀ-ում աշխատավորները զերծ են այն հոգսից, թե ինչ միջոցներով կրթության տան իրենց երեխաներին. դպրոցներում, տեխնիկումներում, ինստիտուտներում և համալսարաններում ուսումը լրիվ անվճար է, իսկ ուսանողների գերակշիռ մեծամասնությունը պետական կրթաթոշակ է ստանում։ Եվ դեռ երբեք գերմանական համալսարաններում և բոլոր տեսակի բարձրագույն դպրոցներում բանվորների ու գյուղացիների այնքան շատ երեխաներ չեն սովորել, որքան այսօր ԳԴՀ-ում։ Այս ամենը, ընկերնե՛ր, և շատ այլ բաներ ըստ էության սոցիալիզմի ռեալ առավելություններն են, գերմանական սոցիալիստական պետության ռեալ նվաճումները։ Եվ սոցիալիզմի ամենակարևոր նվաճումը, անկասկած, նոր նկարագիր ունեցող մարդն է, որը հպարտանում է իր սոցիալիստական հայրենիքով, նվիրված է կոմունիզմի գաղափարներին, իր*



*պետության բարօրության նկատմամբ հոգածությունը նույնական է եղբայրական երկրների ամբողջ համագործակցության շահերին։*

*Թանկագին գերմանացի ընկերնե՛ր, դուք փառավոր ուղի եք անցել և դրանով հպարտանալու բոլոր հիմքերն ունեք։ Այս պատմական օրը ընդունեք Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և սովետական կառավարության ամենասրտագին, ամենաանկեղծ շնորհավորանքները, 250 միլիոնանոց սովետական ժողովրդի եղբայրական ջերմ ողջույնն ու լավագույն բարեմաղթությունները Գերմանական Դեմոկրատական Հանրապետության ժողովրդին։*

(Փոթորկալի, երկարատև ծափահարությունների ներքո ընկեր Լ. Ի. Բրեժնևը հանդիսավոր նիստի նախագահությանը հայտնեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և Մինիստրների սովետի ողջույնի տեքստը։ Դահլիճում երկարատև օվացիա է բռնկում։ Բոլորը ոտքի են կանգնում)։

*Թանկագին բարեկամնե՛ր։*

*Սոցիալիստական հասարակության ամենաբնորոշ հատկանիշը նրա նպատակամիտումն է առ ապագան։ Մենք գիտենք, որ այժմ ձեր բոլոր խոհերն ու գործերը ենթարկված են Գերմանիայի սոցիալիստական միասնական կուսակցության ութերորդ համագումարի առաջադրած՝ զարգացած սոցիալիզմի կառուցման խնդիրների լուծմանը։*

*Դուք անհրաժեշտ ամեն բան ունեք ձեր մտահղացումներն իրագործելու համար։ Դա արտադրական պատկառելի բազան է, գիտության ու տեխնիկայի զարգացման բարձր մակարդակը։ Դա տնտեսվարության և էկոնոմիկայի կառավարման կարգավորված մեխանիզմն է, հիանալի մասնագետների մեծ ջոկատը, աշխատավորների բարձր որակավորությունն ու կազմակերպվածությունը։ Եվ, անշուշտ, երկրում իշխող քաղաքական մթնոլորտը, Ազգային ճակատի բոլոր կազմակերպությունների, հանրապետության բանվոր դասակարգի և ամբողջ ժողովրդի համախմբվածությունն իրենց ճանաչված ավանգարդի՝ կոմունիստների երկմիլիոնանոց կուսակցության շուրջը, կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի և իր ժողովրդի հավատարիմ զավակ, տոկուն հակաֆաշիստ, միջազգային կոմունիստական շարժման ականավոր գործիչ էրիխ Հոնեկերի գլխավորած Կենտկոմի քաղբյուրոյի ղեկավարության մեծ հեղինակությունը։*

*Սոցիալիզմի և կոմունիզմի համար մղվող պայքարի ավելի քան կեսդարյա փորձ ունեցող մեր ժողովուրդը, մեր կուսակցությունը լավ են հասկանում այն խնդիրների մասշտաբն ու բարդությունը, որ իրենց առջև դնում են ձեր կուսակցությունը, ձեր ժողովրդական պետությունը։ Եվ մենք անկեղծորեն, եղբայրաբար մեծագույն հաջողություններ ենք մաղթում ձեզ, թանկագին բարեկամնե՛ր։*

*Ընթացիկ, ինչպես նաև գալիք տարին, մի շարք եղբայրական երկրներում ժողովրդական իշխանության հաստատման նշանակալի հոբելյանների տարիներ են։ Հաճելի է գիտակցել, որ նրանք իրենց հոբելյանները դիմավորում են հասարակական, տնտեսական և կուլտուրական զարգացման տարբեր ոլորտներում ձեռք բերած ակնառու արդյունքներով։ Այդ արդյունքներն առանձնապես աչքի են ընկնում կապիտալիստական աշխարհի տնտեսական, սոցիալական և քաղաքական անչափ խորացած անկայունության ֆոնի վրա։ Մենք համոզված ենք, որ որքան լայն ու խոր լինի սոցիալիստական պետությունների*

բազմակողմանի համագործակցությունը, որքան սերտ լինի նրանց համախմբվածությունը, այնքան լրիվ կբացահայտվեն նոր կարգերի առավելությունները: Հենց այդ ուղղությամբ են զարգանում Սովետական Միության և Գերմանական Դեմոկրատական Հանրապետության հարաբերությունները: Անընդհատ խորանում և ամրապնդվում է մեր երկու կուսակցությունների՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության և Գերմանիայի սոցիալիստական միասնական կուսակցության մարտական ընկերական համագործակցությունը: Մեր երկու երկրների ժողովուրդները բոլոր ոլորտներում շաղկապված են բազմապիսի սերտ կապերով ու կոնտակտներով, որոնք ընդգրկում են բառիս բուն իմաստով միլիոնավոր մարդկանց: ԳԴՀ-ն վաղուց արդեն դարձել է ՍՍՀՄ-ի առավել խոշոր տնտեսական պարտնյորներից մեկը: Եվ մեր մարդիկ փորձով գիտեն. նա պատկառելի, հուսալի, իր պարտավորությունները բարեխղճորեն կատարող պարտնյոր է: Մենք գիտենք նաև, որ ԳԴՀ-ում դրականորեն է գնահատվում մեր օժանդակությունը հանրապետության ժողովրդական տնտեսությունը հումքով, տեխնիկայով և այլ արտադրանքով ապահովելու գործում:

Այժմ գնալով ավելի մեծ նշանակություն է ստանում եղբայրական երկրների բազմակողմ համագործակցությունը սոցիալիստական տնտեսական ինտեգրացման շրջանակներում: Մենք արդեն գործնականորեն ձեռնամուխ ենք եղել այն նախագծերի իրականացմանը, որոնք կապված են թե՛ արտադրության կոոպերացման, թե՛ համատեղ պլանավորման և թե կոլեկտիվ գիտական հետազոտությունների հետ: Ըստ որում, առաջին պլան են մղվում այնպիսի խոշոր պրոբլեմներ, ինչպիսիք են՝ մեքենաշինության որակի և տեխնիկական մակարդակի բարձրացումը, վառելիքահումքային բազայի զարգացումը, համաշխարհային սոցիալիստական շուկայում առանձին արտադրատեսակների դեֆիցիտի վերացումը:

Չեմ կասկածում, որ Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունը եղբայրական մյուս երկրների հետ արժանի ավանդ կներդնի այդ պրոբլեմների լուծման գործում, այն բանում, որ սոցիալիստական համագործակցությունը կանգնի գիտատեխնիկական առաջընթացի առաջավոր բնագծերում:

Մենք Սովետական Միությունում լավ ենք հասկանում, թե այդ առումով ինչպիսի նշանակություն ունի սովետական էկոնոմիկայի զարգացումը: Մեր երկրի բանվորները, կոլտնտեսականները և մտավորականները մեծ խանդավառությամբ են աշխատում, բարձրացնում են աշխատանքի արտադրողականությունը և արտադրանքի որակը, որպեսզի հաջողությամբ կատարվեն սոցիալիստական արտադրությունը արագ տեմպերով զարգացնելու, նրա արդյունավետությունը բարձրացնելու և դրա հիման վրա ժողովրդի բարեկեցության նոր վերելքի հասնելու վերաբերյալ կուսակցության XXIV համագումարի որոշումները:

Մոտավորապես մեկ տարի հետո մենք կամփոփենք իններորդ հնգամյակի արդյունքները, և արդեն այժմ կարելի է վստահ ասել. դրանք ցույց կտան, որ սովետական երկիրն ավելի է հզորացել, նոր, զգալի քայլ է արել կոմունիզմի կառուցման ճանապարհին:

Հարգելի ընկերնե՛ր:

Մենք ձեզ հետ ապրում ենք այնպիսի ժամանակներում, երբ նախադրյալներ են ստեղծվել միջազգային հարաբերությունների արմատական վերակա-



ռուցման համար, և առաջին հերթին այստեղ, Եվրոպայում: Ուղի է հարթվում տարբեր հասարակարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության հիման վրա բարիդրացիության և փոխշահավետ համագործակցության հարաբերությունների հաստատման համար, որի օգտին սովետական երկիրը միշտ հանդես է եկել՝ սկսած իր ծննդյան օրից: Եվ եթե այսօր այդ խնդիրը լուծվում է գործնական առումով, ապա պետք է ուղղակի ասել. դա հնարավոր է դարձել նախ և առաջ համաշխարհային սոցիալիզմի ամրապնդման և համաշխարհային ասպարեզում սոցիալիստական պետությունների անչափ աճած դերի շնորհիվ:

Հասկանալի պատճառներով Եվրոպայի խաղաղության ամրությունը պայմանավորող պրոբլեմների կոմպլեքսում հատուկ տեղ են գրավում սոցիալիստական երկրների հարաբերությունները Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության հետ: Այս հարցին մենք բոլորս զգալի ուշադրություն ենք նվիրում: Կարծում եմ, որ հիմքեր կան բարձր գնահատելու վերջին տարիներս այդ բնագավառում ձեռք բերված առաջընթացը:

Անհրաժեշտ է շեշտել, որ խաղաղ գոյակցության սկզբունքների հիման վրա գերմանական երկու պետությունների հարաբերությունների նորմալացումը և զարգացումը պաշտպանող Գերմանական Դեմոկրատական Հանրապետության քաղաքականությունը սոցիալիստական երկրների ընդհանուր կուրսի կարևոր բաղկացուցիչ մասն է և միջազգային լարվածության թուլացման կարևոր տարրը հատկապես Եվրոպայում:

Սոցիալիստական երկրների և ԳՖՀ-ի հարաբերություններում թշնամանքից և հակամարտությունից անցումը խաղաղ, փոխշահավետ համագործակցության, որը նկատվում է վերջին տարիներս, վայելում է եվրոպական հասարակայնության, այդ թվում՝ ինչպես մենք հասկանում ենք, բուն ԳՖՀ-ի բնակչության մեծամասնության աջակցությունը: Այդ է խաղաղության և լարվածության թուլացման քաղաքականության հետագա հաջողությունների գրավականը:

Իհարկե, մենք գիտենք, որ ԳՖՀ-ում դեռ կան այնպիսի ազդեցիկ շրջաններ, որոնց սրտով չեն կատարվող փոփոխությունները: Նրանք սոցիալիստական երկրների հետ կնքված պայմանագրերը համարում են հարկադրական տուրք ժամանակի ոգուն և կուզենային նվազագույնի հասցնել դրանց գործնական նշանակությունը: Կասեմ անկեղծորեն. այդ ուժերին ձեռնտու են նաև հատուկ առավելություններ ստանալու այն փորձերը, որ ձեռնարկվում են Արևմտյան Բեռլինի վերաբերյալ քառակողմ համաձայնագրին հակառակ:

Մենք կարծում ենք, որ սոցիալիստական տարբեր սիստեմների պատկանող պետությունների մեծ ջանքերի, բարյացակամության և պատասխանատու վերաբերմունքի շնորհիվ ձեռք բերվածը չափազանց արժեքավոր ու կարևոր է և նվազագույն չափով իսկ չպետք է դառնա քաղաքական խաղի առարկա:

Սոցիալիստական համագործակցության երկրների և ԳՖՀ-ի հարաբերությունների ակտիվ զարգացման կուրսն արդեն իրեն արդարացնում է պրակտիկայում: Այն երկու կողմերին շոշափելի արդյունքներ է տալիս ինչպես լավագույն փոխըմբռնմանը նպաստող քաղաքական կոնտակտների բնագավառում, այնպես էլ տնտեսական, գիտատեխնիկական համագործակցության, հասարակական կազմակերպությունների կապերի, մշակութային փոխանակումների բնագավառում: Կարելի է վստահ ասել, որ կայուն հարաբերությունների զարգացման իրավական հիմքերը, որոնք ստեղծվել են ԳՖՀ-ի հետ կնքված պայմանագրերով, օժտվում են առավել ռեալ բովանդակությամբ: Մենք պատրաստ

ենք այսուհետև ևս ընթանալու այդ ուղիով։ Դրանով, ինչպես մենք ենթադրում ենք, պետք է շահագրգռված լինի նաև մյուս կողմը։

Մոտ ժամանակներս, ինչպես դուք գիտեք, մենք սպասում ենք ԳՖՀ-ի կանցլեր պ-րն Շմիդտին, որը Մոսկվա է գալու պաշտոնական այցով։ Դա նրա՝ որպես կառավարության ղեկավարի, առաջին այցը կլինի Սովետական Միություն։ Հաշվի առնելով Ֆեդերատիվ Հանրապետության արտաքին քաղաքականության հաջորդականության վերաբերյալ ԳՖՀ-ի կառավարության ղեկավարների հայտարարությունները, մենք հուսով ենք, որ առաջիկա բանակցությունները հնարավորություն կտան նոր կոնկրետ քայլեր անելու փոխշահավետ կապերի և համագործակցության զարգացման ոլորտում։ Դա կհամապատասխանի ինչպես մեր երկու երկրների շահերին, նույնպես և Եվրոպայի խաղաղությանը։

Ընկերնե՛ր։ Սոցիալիստական երկրները շատ ջանքեր են գործադրել համաեվրոպական խորհրդակցության հրավիրման և նրա հաջողության համար մղվող պայքարում։ Մենք երբեք պատրանքներ չենք տածել, թե պատմության մեջ այդ կարգի առաջին հանդիպման ընթացքը դյուրին կլինի։ Եվ իրոք, խորհրդակցությունում դժվարություններ կային ու դեռևս կան։ Դրանց մի մասի պատճառն այն է, որ առանձին հարցերում մասնակիցների հայացքները բնականաբար չեն զուգադիպում, մյուս մասի պատճառն այն է, որ մասնակիցներից ոմանք ձգտում են իրենց համար միակողմանի օգուտներ քաղել։ Բայց արդեն այժմ պարզ է, որ Եվրոպայի խաղաղության ապահովման շահերը տիրաբար պահանջում են մոտ ժամանակներս ավարտել համաեվրոպական խորհրդակցությունը։ Սովետական Միությունը, ԳԴՀ-ն և սոցիալիստական մյուս պետությունները բոլոր ջանքերը գործադրում են, որպեսզի այդ խորհրդակցությունը հաջողությամբ պսակվի, որը կօգնի Եվրոպայում անվտանգության և խաղաղ համագործակցության ամուր հիմնադրմանը։

Մենք ելնում ենք այն բանից, որ խորհրդակցության որոշումները կնպաստեն եվրոպական մայրցամաքի պետությունների միջև ինչպես երկկողմ, նույնպես և բազմակողմ արդյունավետ համագործակցության ծավալման քաղաքականության, էկոնոմիկայի, գիտության, կուլտուրայի բնագավառում և մարդկային գործունեության այլ ոլորտներում։ Մեր ընդհանուր խնդիրն է՝ օգնել հին Եվրոպայի կյանքում նոր դարաշրջանի՝ խելամիտ հարաբերությունների և փոխադարձ վստահության դարաշրջանի աստիճանական ձևավորմանը։

Մեր համագործակցության երկրների համատեղ մշակած և կիրառվող քաղաքականությունը պարզորոշ վկայում է, որ սոցիալիստական պետությունները պատրաստ են իրենց ակտիվ դերը խաղալու այդ նպատակի իրականացման գործում։ Նրանք խաղաղության և բարեկամության ձեռք են մեկնում մայրցամաքի մյուս երկրներին և կոնստրուկտիվ համագործակցության հույս են տածում։ Դա վերաբերում է ո՛չ միայն Եվրոպային։ Դա ճշմարիտ է նաև համաշխարհային մասշտաբով։ Ոգեշնչված լենինյան միջազգային քաղաքականության սկզբունքներով, որի բարձրագույն նպատակն է՝ ապահովել սոցիալական պրոգրեսը խաղաղության և ժողովուրդների անվտանգության պայմաններում, Սովետական Միությունը, Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունը, սոցիալիստական համագործակցության բոլոր պետությունները անդուլ պայքարում են պատերազմի վտանգի նվազեցման, ռազմական դիմակայության թուլացման, սպառազինությունների մրցավազքի սահմանափակման, այդ մըր-



ցավազքի ծախսերի բեռի կրճատման, զինաթափման համար։ Մեր այդ քաղաքականությունը ճանաչում և աջակցություն է գտնում երկրագնդի բոլոր ազնիվ մարդկանց կողմից։

Կապիտալիստական պետությունների որոշ ղեկավարներ նույնպես հետըզհետե սկսում են հասկանալ, որ սպառազինությունների անզուսպ մրցավազքը չի կարող լուծել պետությունների, առավել ևս համաշխարհային երկու հասարակական սիստեմների հակասությունները, չի կարող անվտանգություն բերել ժողովուրդներին։

Այս ամենը հնարավորություններ ստեղծեց վերջին տարիներս սպառազինությունների մրցավազքի որոշ սահմանափակման վերաբերյալ կարևոր համաձայնագրերի կնքման համար։ Դրանք վատ չեն գործում։ Բայց այդ համաձայնագրերը սոսկ սկիզբն են, հիմա անհրաժեշտ է ավելի առաջ ընթանալ։ Մենք չափազանց կարևոր նշանակություն ենք տալիս այդ նպատակով վարվող բանակցություններին, նախ և առաջ ՍՍՀՄ-ի ու ԱՄՆ-ի ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման հետագա քայլերին և Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի ու սպառազինությունների կրճատման շուրջ վարվող բանակցություններին։

Դուք գիտեք, ընկերնե՛ր, որ վերջին ժամանակներս Սովետական Միությունը մի շարք նոր կոնկրետ առաջարկություններ է արել սպառազինությունների մրցավազքի սահմանափակման և զինաթափման վերաբերյալ։

Մենք, մասնավորապես, ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի քննարկմանն ենք ներկայացրել ռազմական նպատակներով ու միջազգային անվտանգության, մարդկանց բարեկեցության ու առողջության ապահովման շահերին անհարիր այլ նպատակներով բնական միջավայրի և կլիմայի վրա ներգործությունը արգելելու առաջարկությունը։ Այդ առաջարկությունը շատ պետությունների հավանությանն է արժանացել։

ԱՄՆ-ի կառավարության հետ մեր շփումների ընթացքում մենք շարունակում ենք քիմիական զենքի առավել վտանգավոր, մահաբեր տեսակների արգելման ու ոչնչացման միջազգային համաձայնագիր կնքելու համատեղ նախաձեռնության կոնկրետ ձևերի մշակումը։

Սովետական Միությունը, ինչպես ես արդեն ասել եմ վերջերս, պատրաստ է ցանկացած ժամանակ համաձայնության գալու Միջերկրական ծովից սովետական և ամերիկյան՝ միջուկային զենք կրող ռազմանավերի ու սուզանավերի դուրս բերման շուրջ։ Մենք հանդես ենք գալիս նաև միջուկային զենքի ստորերկրյա փորձակումների լրիվ դադարեցման շուրջ համաձայնության գալու օգտին։

Սրանք են այն քայլերից սոսկ մի քանիսը, որոնց իրականացումը մոտ ժամանակներս մենք միանգամայն հնարավոր ենք համարում։ Մենք հաստատակամորեն հանդես կգանք այդ առաջարկությունների օգտին, հույս դնելով բոլոր խաղաղասեր ուժերի ըմբռնման և աջակցության վրա։

Բայց, անշուշտ, սրանով ամենևին չի սպառվում այն, ինչ կարելի է և պետք է արվի պատերազմի վտանգը նվազեցնելու և սպառազինությունների մրցավազքը սանձահարելու համար։ Կասեցնել այդ մրցավազքը, իսկ հետո անցնել սպառազինությունների կրճատմանը— ահա այն գլխավոր բնագծերը, որ պետք է նվաճվեն մեր ընդհանուր վերջնական նպատակի իրականացման՝ ընդհանուր և լրիվ զինաթափման ճանապարհին։

Լարվածության թուլացման պայքարում ձեռք բերված հաջողությունները, անկասկած, զգալի են, բայց դրանով հանգստանալ բնավ չի կարելի: Միջազգային կյանքը նորանոր պրոբլեմներ է հարուցում: Ասենք հին պրոբլեմների մի մասն էլ դեռևս չի լուծված: Դեռ չի կարգավորված մերձավորարևելյան ճգնաժամը, թեև դրա լուծման համար անհրաժեշտ նախադրյալներ վաղուց են ստեղծվել: Դեռ ինչպես հարկն է չի ապահովված նաև Հնդկաչինի ժողովուրդների կայուն խաղաղությունը, որոնք պետք է, ի վերջո, հնարավորություն ստանան զբաղվելու իրենց կյանքի կարգավորմամբ՝ առանց արտաքին ուժերի միջամտության: Դա, անշուշտ, լիովին վերաբերում է նաև Կիպրոսի ժողովրդին: Ասենք մոլորակի ուրիշ շրջաններում նույնպես դեռ քիչ չեն անհանգիստ վայրերը:

Խաղաղության և ժողովուրդների անվտանգության օգտին միջազգային սուր պրոբլեմները լուծելու գործում առաջվա պես օգտակար և, ես կասեի, անփոխարինելի դեր կարող են խաղալ սոցիալիստական երկրների համատեղ գործողությունները: Հանուն խաղաղության ամրապնդման միջազգային ասպարեզում մեր քաղաքական ջանքերի կոորդինացում, հանուն խաղաղության պաշտպանության Վարշավայի պայմանագրի երկրների զինված ուժերի եղբայրական համագործակցություն— այս ամենը շատ մեծ նշանակություն ունեցող գործոններ են: Այստեղ, ինչպես որ ներքին զարգացման խնդիրների լուծման բնագավառում, սոցիալիստական համագործակցության պետությունների համախմբվածությունը և միասնությունը մեր հետագա հաջողությունների հուսալի գրավականն են:

Ընկերնե՛ր: Թանկագին բարեկամնե՛ր:

Վերջին ժամանակներս մենք համաեվրոպական, ավելին, համաշխարհային նշանակություն ունեցող քաղաքական խոշոր իրադարձությունների վկաներն ենք: Խոսքը վերաբերում է Պորտուգալիայում ֆաշիզմի տապալմանը և Հունաստանում «սև գնդապետների» բռնատիրության անփառունակ վախճանին: Շատ տասնամյակների ընթացքում առաջին անգամ ռեալ կերպով ուրվագծվել է Եվրոպայի՝ ֆաշիստական վարչակարգերից լիովին ձերբազերծվելու հեռանկարը, թեև վերջին օրերս Լիսաբոնի իրադարձությունները հիշեցնում են, որ ֆաշիզմի տապալումից հետո էլ հետադեմ ուժերը զենքը վայր չեն դնում: Ուստի, դեմոկրատիայի ուժերը պետք է զգոն լինեն:

Թույլ տվեք այս ամբիոնից մեր համերաշխությունը հայտնել պորտուգալական ժողովրդին, նրան լիակատար հաջողություն մաղթել ազատ, դեմոկրատական Պորտուգալիայի համար մղվող պայքարում: Մենք համերաշխ ենք նաև Հունաստանի հայրենասիրական ուժերի հետ, որոնք ձգտում են զարգացնել և ամրապնդել իրենց երկրում սկսված դեմոկրատական պրոցեսը:

Պորտուգալական ֆաշիզմի տապալումը միաժամանակ պորտուգալական գաղութատիրության փլուզումը եղավ:

Իննսուն տարի առաջ այստեղ՝ Բեռլինում, որը կայզերական ռայխի մայրաքաղաքն էր, բուրժուական պետությունների դիվանագետները բաժանում և վերաձևում էին Աֆրիկան: Դա գաղութատիրության համաշխարհային սիստեմի ստեղծման եզրափակիչ ակտերից մեկն էր, որը նրա ստեղծողներին թվում էր գրեթե հավիտենական: Իսկ այսօր Գվինեա-Բիսաուում, Մոզամբիկում, Անգոլայում ազգային ազատագրական շարժման միասնական հարվածից և Պորտուգալիայի ժողովրդի հակաֆաշիստական շարժումից փլվում է գաղութատիրական վերջին կայսրությունը:



Պորտուգալական գաղութատիրության խորտակումը խոշոր բնագիծ է աֆրիկյան մայրցամաքում գաղութային ստրկության լիակատար ու վերջնական վերացման համար մղվող պայքարում: Մենք համոզված ենք, որ մոտ է այն օրը, երբ ամբողջ Աֆրիկան՝ Բարեհուսո հրվանդանից մինչև Արևմտյան Սահարա, ազատ կլինի:

Սոցիալիստական երկրները միշտ էլ լիակատար աջակցություն և համակողմանի օգնություն են ցույց տվել գաղութների ազատագրման մարտիկներին: Դա համարել և համարում ենք մեր ինտերնացիոնալ պարտքը: Եվ գաղութային լուծը թոթափած ժողովուրդների հետ մենք ողջունում ենք հակագաղութային հեղափոխության հաղթանակները, հեղափոխություն, որն արդի պատմության հզոր արագացուցիչներից մեկն է:

Խորհելով միջազգային հարաբերությունների վաղվա օրվա մասին, ձգտելով կայուն, անսասան խաղաղության, մենք լավ ենք տեսնում, որ դեպի այդ նպատակը տանող ուղին զերծ չէ խոչընդոտներից: Խաղաղության գործը, լարվածության թուլացման գործը ունեն ո՛չ միայն ջատագովներ, այլև ակտիվ հակառակորդներ: Վերջիններիս մեջ են, դժբախտաբար, նաև ՉԺՀ-ի ներկայիս ղեկավարները:

Հենց օրերս լրացավ Չինական Ժողովրդական Հանրապետության գոյության 25-րդ տարեդարձը: Ժողովրդական հեղափոխության հաղթանակը մեծ իրադարձություն էր Չինաստանի կյանքում, համաշխարհային ամբողջ հեղափոխական շարժման զարգացման ասպարեզում: Մենք պատշաճն ենք հատուցում այն չին կոմունիստների սխրանքին, ովքեր, արտահայտելով իրենց ժողովրդի իղձերը, գլխավորեցին ազգային ազատագրության, իրենց երկրում նոր սոցիալական կարգերի հաստատման պայքարը:

Բայց այսօր հարկ է լինում խոսել նաև մի այլ բանի մասին: Չի կարող դառնություն չպատճառել այն փաստը, որ մաոյական ղեկավարների կամքով Չինաստանը ընթացավ սոցիալիստական երկրների հետ կապերը խզելու և նրանց դեմ պայքարելու ուղիով, համաշխարհային ամենաագրեսիվ, հետադեմ ուժերի հետ մերձենալու և նրանց խրախուսելու ուղիով:

Մենք համոզված ենք, որ այդպիսի անբնական վիճակը չի կարող անվերջ շարունակվել: Չինաստանի ժողովրդի պատմության, սոցիալիստական պետությունների հետ նրա հարաբերությունների պատմության այդ մռայլ էջը անխուսափելիորեն շուռ կտա հենց ինքը՝ չին ժողովուրդը: Ինչ վերաբերում է մեզ, ապա մենք ջանքեր ենք գործադրել ու կգործադրենք՝ նորմալացնելու հարաբերությունները Չինական Ժողովրդական Հանրապետության հետ, վերականգնելու եղբայրական բարեկամությունն ու համագործակցությունը Չինաստանի կոմունիստների, աշխատավորների հետ: Մենք կարծում ենք, որ այդ են պահանջում ինչպես ՍՍՀՄ-ի, այնպես էլ Չինաստանի արմատական շահերը, համաշխարհային սոցիալիզմի, ժողովուրդների ազատագրական պայքարի և երկրագնդի կայուն խաղաղության շահերը:

Թանկագին ընկերնե՛ր:

Սոցիալիզմի թշնամիները լավ են հասկանում մեր երկրների միասնության նշանակությունը: Նրանք հենց այդ միասնության դեմ են ուղղում իրենց գլխավոր գրոհները: Մենք գիտենք, որ երկու սիստեմների սահմանագծում

գտնվող ԳԴՀ-ն ենթարկվում է իմպերիալիզմի հատկապես ուժգին ներգործությանը։ Օր-օրի հանրապետության բնակչության վրա հեղվում են թշնամական պրոպագանդայի հոսանքներ, որի նպատակն է կասկածներ սերմանել ԳՍՄԿ-ի քաղաքականության և ԳԴՀ-ի ժողովրդի ընտրած ուղու ճշտության նկատմամբ, փորձել, եթե ոչ բաժանել, ապա թեկուզ հեռացնել գերմանական աշխատավորների սոցիալիստական հանրապետությունը սոցիալիստական պետությունների մեծ համագործակցությունից։

Դա, իհարկե, չի լինի։ ԳԴՀ-ի աշխատավորները լավ են հասկանում, թե ինչ է թաքնված դասակարգային հակառակորդի նենգ պրոպագանդայի հետևում։ Նրանք հպարտանում են իրենց նվաճումներով և թանկ են գնահատում դրանք։ Նրանք լավ գիտեն, թե ովքեր են իրենց իսկական ու հավատարիմ բարեկամները։

Թերևս հենց ԳԴՀ-ի ստեղծման ու զարգացման պատմությունն է ամենայն պարզությամբ ցույց տալիս, թե մեր ժամանակներում ինչպիսի՜ նշանակություն ունի սոցիալիստական պետությունների ինտերնացիոնալ համերաշխությունը։

Սովետական կոմունիստները մաքուր խղճով կարող են ասել. նույնիսկ ամենաբարդ իրավիճակներում, երբ բանը հասել է իմպերիալիստական ուժերի հետ ուղղակի ընդհարման սպառնալիքին, մենք ամենևին չենք տատանվել եղբայրական ԳԴՀ-ի շահերի պաշտպանության գործում։

Մենք՝ սովետական մարդիկ, բարձր ենք գնահատում այն, որ սովետների երկրի հետ բարեկամությունը դարձել է ԳՍՄԿ-ի և Գերմանական Դեմոկրատական Հանրապետության ինտերնացիոնալիստական քաղաքականության անբաժանելի մասը, որ այն մոտիկ է ձեր երկրի միլիոնավոր քաղաքացիների սրտերին։ Համոզված եղեք, թանկագին ընկերնե՛ր, որ սովետական ժողովուրդը նույնպիսի լավ զգացումներ է տածում ձեր հանդեպ։ Մարքսի, Էնգելսի, Լենինի ինտերնացիոնալիստական պատգամներին հավատարիմ մեր կուսակցությունը սովետական մարդկանց դաստիարակում է ԳԴՀ-ի աշխատավորների հետ բարեկամության ու եղբայրության ոգով։ Գիտցե՛ք և հիշեցե՛ք, ցանկացած ժամանակ և ցանկացած պահին մենք ձեզ հետ ենք, մենք ձեր կողմն ենք, մենք սոցիալիզմի կողմն ենք, աշխատանքի, խաղաղության և աշխատավորների ինտերնացիոնալ եղբայրության կողմը։

Թո՛ղ կեցցե՜ և բարգավաճի Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունը։

Թո՛ղ ամրապնդվի Սովետական Միության և ԳԴՀ-ի անխախտ բարեկամությունը։

Կեցցե՜ սոցիալիզմի երկրների մեծ համագործակցությունը՝ խաղաղության և առաջընթացի հուսալի պատվարը։

Կեցցե՜ կոմունիզմը։

* * *

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառը լսվեց մեծ ուշադրությամբ և բազմիցս ընդհատվում էր երկարատև ծափահարություններով։

Ճառի եզրափակիչ խոսքերն ընդունվեցին հոտնկայս, փոթորկալի, երկարատև ծափահարություններով։ Դահլիճում թնդում է օվացիան, ներկաները վանկարկում են. «ՍՄԿԿ—ԳՍՄԿ», «Բարեկամություն-ֆրոյնդշաֆտ»։

---

# ՎԱՐՊԵՏՈՐԵՆ ՎԱՐԵԼ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՈՒՄԸ

Նոր հասարակարգի կառուցման բնագավառում ՍՄԿԿ, սովետական ժողովրդի ստեղծարար գործունեության հիմքը մարքսիզմ-լենինիզմն է։ Մարքս-լենինյան ուսմունքի զարգացումն ու պրոպագանդումը, սովետական մարդկանց գիտական աշխարհայացքի ձևավորումը կուսակցության գաղափարական աշխատանքի հիմնական նպատակն են, որին ծառայում է և կուսակցական-քաղաքական կրթության ողջ սիստեմը։ Կոմունիստների մարքս-լենինյան ուսուցումը, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXIV համագումարում, գաղափարա-քաղաքական խոշոր նշանակություն ունեցող գործ է։ «Կուսակցությունը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ,— շատ կարևոր է համարում, որ կոմունիստները հաստատակամորեն տիրապետեն մարքսիզմ-լենինիզմի տեսությանը, հասարակական զարգացման օրենքների իմացությանը, կարողանան վստահորեն կողմնորոշվել կյանքի նոր երևույթներում, ճիշտ գնահատական տան դրանց և գործնական ճիշտ հետևություններ անեն։ Կոմունիստների գաղափարական կոփումը մեր կուսակցական շարքերի մարտունակության բարձրացման անհրաժեշտ պայմանն է» (**ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը,** էջ 138)։ Համագումարի որոշումներում և կուսակցության Կենտկոմի հանձնարարականներում հատուկ ուշադրություն է նվիրվում այն բանին, որ կոմունիստական շինարարության պրակտիկ խնդիրները ուսումնասիրվեն մարքսիզմ-լենինիզմի տեսության հետ սերտորեն կապված։

Հանրապետության կուսկազմակերպությունները անցած ուսումնական տարում զգալի աշխատանք են տարել մարքս-լենինյան ուսուցման և տնտեսագիտական կրթության բարելավման, դրանք առավել ներգործուն դարձնելու ասպարեզում։

Ունկնդիրները խորապես ուսումնասիրեցին մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի բաղկացուցիչ մասերը, ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, կուսակցության Կենտկոմի ապրիլյան և դեկտեմբերյան (1973 թ.) պլենումների որոշումները, ՍՍՀՄ կազմավորման հիսնամյակի առթիվ Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը, խաղաղասեր ուժերի համաշխարհային կոնգրեսում, Ալմա-Աթայի հանդիսավոր նիստում և ՀամԼԿԵՄ XVII համագումարում նրա արտասանած ճառերը։ Ունկնդիրները ուսումնասիրեցին սովետական հասարակության սոցիալ-քաղաքական և տնտեսական, համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հետագա ամրապնդման պրոբլեմները, նոր մարդու ձևավորման, արտադրության կառավարման գործում աշխատավորական կոլեկտիվների դերի բարձրացման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության հարցերը։

Ունկնդիրների ճնշող մեծամասնությունն այժմ սվելի հստակ է ըմբռնում իր անհատական ջանքերի հասարակական նշանակությունը, առավել ակտիվությամբ է մասնակցում բարձր արտադրողական աշխատանքի, որակյալ արտադրանքի սոցպարտավորությունների կատարման, կոլեկտիվում պատշաճ կազմակերպվածության և աշխատանքային կարգապահության համար մղվող պայքարին։

Ուշագրավ է Երևանի, Լենինականի, Կիրովականի, Ղափանի, Գուգարքի, Արտաշատի, Նոյեմբերյանի և այլ շրջանների կուսկազմակերպություննե-

րի բազմաբնույթ, մտածված ու արդյունավետ աշխատանքը մարքսիզմ-լենինիզմի ուսուցման կազմակերպման ասպարեզում: Նրանք ճիշտ են ընտրել ուսուցման ձևերը, մշակել են պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքների որոշակի սիստեմ, հետևում են, որպեսզի կոմունիստներն ու անկուսակցականները ինչպես հարկն է ուսումնասիրեն մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները, հանձնարարված ողջ գրականությունը:

1973—1974 ուստարին անցավ տնտեսագիտական ուսուցման հետագա ծավալման նշանաբանով՝ ՍՄԿԿ Կենտկոմի 1971 թ. օգոստոսի 31-ի «Աշխատավորների տնտեսագիտական կրթությունը բարելավելու մասին» որոշմանը համապատասխան: Տնտեսագիտական կրթության սիստեմի տիպային ուսումնական պլանով առաջնորդվող ավելի քան երեք հազար սեմինարներում, դպրոցներում, խմբակներում ընդգրկված էր մոտ 160 հազար մարդ: Բացի այդ, արդյունաբերության և գյուղատնտեսության ավելի քան 52 հազար աշխատողներ որակավորման բարձրացման տարբեր դասընթացներում հարստացրին իրենց տնտեսական գիտելիքները: Կուսակցական լուսավորության սիստեմի ունկնդիրների գրեթե 35 տոկոսն ուսումնասիրել է էկոնոմիկայի հարցերը:

Այժմ ոչ ոք չի կասկածում, որ սոցիալիստական արտադրության հետագա զարգացումն անհնար է առանց աշխատավորների տնտեսական գիտելիքների հարստացման: Կյանքն ինքը, արտադրության ինտենսիվացման օբյեկտիվ անհրաժեշտությունը հանրապետության աշխատավորական լայն զանգվածներին և, առաջին հերթին, ղեկավար աշխատողներին համակում են այն համոզմամբ, որ տնտեսագիտական տեսության և կուսակցության քաղաքականության հարցերի, հասարակական արտադրության կառավարման գիտական հիմունքների, տնտեսավարման լենինյան սկզբունքների ուսումնասիրությունն անհրաժեշտություն է:

Աշխատավորների տնտեսագիտական կրթության կազմակերպման ուսանելի փորձ են կուտակել Աշտարակի, Ստեփանավանի, Սևանի, Երևանի Լենինյան, Սովետական, Շահումյանի շրջանների, Կիրովականի, Լենինականի, Դիլիջանի քաղաքների կուսկազմակերպությունները. հետևողական աշխատանք է կատարվում հանրապետության թեթև արդյունաբերության, ավտոմոբիլային տրանսպորտի, ավտոմոբիլային ճանապարհների շինարարության և շահագործման մինիստրություններում:

Հանրապետության կուսկազմակերպությունները, կենսագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Տաշքենդի քաղաքային կուսակցական կազմակերպությունում ղեկավար կադրերի մարքս-լենինյան ուսուցման ու տնտեսագիտական կրթության մասին» որոշումները, իրականացնելով Անդրկովկասի գաղափարական աշխատողների գիտա-պրակտիկ կոնֆերանսի հանձնարարականները, բարձրացրել են ղեկավար կադրերի մարքս-լենինյան ուսուցման և տնտեսագիտական կրթության մակարդակը: Ստեղծվել է ղեկավար կադրերի մարքս-լենինյան ուսուցման սիստեմ, որն ընդգրկում է ՀԿԿ Կենտկոմին և շրջանային ու քաղաքային կոմիտեներին կից 12 սեմինարները, մարքսիզմ-լենինիզմի երկու համալսարանները: Նրանց համար հաճախ կազմակերպվում են տեսական, գիտապրակտիկ, մեթոդական կոնֆերանսներ:

Շատ կուսկազմակերպություններ մեծ հոգածությամբ են ընտրում և դաստիարակում քաղաքական ու տնտեսագիտական կրթության սիստեմի պրոպագանդիստական կադրերին: Կուսակցական լուսավորության ցանցի պրոպագանդիստների 90 տոկոսն ունի բարձրագույն և թերի բարձրագույն, իսկ տնտեսագիտական ուսուցման պրոպագանդիստների 80,8 տոկոսը նաև տնտեսագիտական կրթություն:

Ավանդույթ է դարձել պրոպագանդիստների հանրապետական ամենամյա դասընթացների, մեթոդական սեմինարների կազմակերպումը: Օգոստոս ամսին այդ դասընթացներում երեք խմբերով վերապատրաստվեցին 200 պրոպագանդիստներ: Նրանք դասախոսություններ լսեցին նվիրված քաղաքա-



տնտեսության կոնկրետ խնդիրներին, գիտատեխնիկական արդի առաջընթացի հրատապ պրոբլեմներին, մեր երկրի և հանրապետության էկոնոմիկայի ու մշակույթի զարգացմանը, Սովետական Միության արտաքին քաղաքականությանը և միջազգային հարաբերություններին: Մարքս-լենինյան ու տնտեսագիտական ուսուցման նկատմամբ կուսակցական ղեկավարությունն ապահովելու նպատակով կուսկոմիտեները պարբերաբար ուսումնասիրում, քննարկում են դպրոցների և սեմինարների պարապմունքների կազմակերպման հետ կապված հարցերը: Այդուհանդերձ, այս գործում դեռևս քիչ չեն թերությունները:

Ոչ բոլոր կուսկազմակերպություններն ու կոմիտեներն են ինչպես հարկն է զբաղվում կոմունիստների, աշխատավորների քաղաքական ու տնտեսագիտական կրթության հարցերով, խորամուխ չեն լինում մարքս-լենինյան ուսուցման էության մեջ, պատշաճ պահանջկոտություն չեն ցուցաբերում կոմունիստների գաղափարա-տեսական մակարդակի բարձրացման նկատմամբ, դեռևս ամեն ինչ չի արվում, որպեսզի կադրերը զինվեն մարքս-լենինյան տեսությամբ, բանիմաց ու ստեղծագործաբար կիրառեն այն պրակտիկ աշխատանքում, հմտորեն ղեկավարեն իրենց վստահված տեղամասերը:

Հաճախ պատշաճ ուշադրություն չի հատկացվում ղեկավար կադրերի ուսուցման կազմակերպմանը: Այս առումով անբավարար են գործում Երևանի և Լենինականի մարքսիզմ-լենինիզմի համալսարանները: Առանձին կուսկազմակերպություններ ու կոմիտեներ հաճախ մոռանում են մեր կուսակցության այն պահանջը, ըստ որի ժամանակակից ղեկավարը պետք է օժտված լինի գաղափարական համոզվածությամբ և բարոյական լավագույն հատկանիշներով, կուսակցական սկզբունքայնությամբ, թերությունների նկատմամբ անհանդուրժողականությամբ, ունենա լայն մտահորիզոն, նորի զգացում, խոր գիտելիքներ, լինի հմուտ մասնագետ, իսկական կազմակերպիչ ու մասսաների դաստիարակ: Ղեկավարի անձնական օրինակը, նրա ակտիվ դաստիարակչական գործունեությունը, ուշադիր, հոգատար վերաբերմունքը մարդկանց հանդեպ, պարզությունն ու համեստությունը դրական ազդեցություն են գործում կոլեկտիվի բարոյա-հոգեբանական վիճակի վրա, նպաստում ընկերական, փոխադարձ պահանջկոտության ու պատասխանատվության, աշխատանքային գործարար մթնոլորտի ստեղծմանը:

Լինում են դեպքեր, երբ քաղաքական ու տնտեսագիտական ուսուցումը կրում է ձևական բնույթ, ինչպես հարկն է չի նպաստում ունկնդիրների գաղափարական աճին, նրանց քաղաքական, գործնական ու բարոյական լավագույն հատկանիշների արմատավորմանը: Ոմանք դեռևս անհոգ են վերաբերվում ուսուցմանը, կառավարման գիտական մեթոդների և առաջավոր փորձի յուրացմանը, մակերեսորեն են ուսումնասիրում տեսության պրոբլեմները և կուսակցության արդի քաղաքականության հարցերը:

Առանձին տեղերում անբավարար են հոգում տնտեսագիտական կրթության պրոպագանդիստների ընտրության և պատրաստման մասին: Այս խնդրում տակավին թույլ է կուսկոմիտեների կապը համապատասխան մինիստրությունների ու գերատեսչությունների հետ:

Պրոպագանդիստների սեմինարներում տեսական ուսուցումը հաճախ փոխարինվում է նեղ մասնագիտական պրոբլեմների ուսումնասիրմամբ: Դրանք երբեմն նմանվում են խորհրդակցության, պատշաճ ուշադրություն չի նվիրվում տեսական պրոբլեմներին, պրոպագանդիստական աշխատանքի արվեստի





հարցերին: Գյուղատնտեսության, արդյունաբերական շինարարության միությունների, «Հայկոոպի» վարչության, անտառային տնտեսության պետական կոմիտեի և մի շարք այլ միությունների ու գերատեսչությունների կուսկազմակերպությունները դեռևս թույլ են ղեկավարում աշխատավորների տնտեսագիտական կրթության գործը: Չնայած նշված թերությունների, մեր հանրապետության կուսկազմակերպությունների մեծ մասը հաշվի է առնում կուտակված դրական փորձը, վերլուծում սխալները, մշակում միջոցառումներ նոր ուսումնական տարում դրանք վերացնելու համար: Նրանք մշտապես կատարելագործում են կոմունիստների, ողջ աշխատավորության, հատկապես ղեկավար կադրերի քաղաքական ու տնտեսագիտական ուսուցումը: Կոմունիստների, աշխատավորական լայն զանգվածների քաղաքական ու տնտեսագիտական կրթությունն այսուհետ ևս պետք է նպաստի նրանց մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորմանը, գաղափարական խոր համոզվածությանը, կյանքի երևույթների նկատմամբ դասակարգային մոտեցմանը, ընթացիկ մոմենտի առանձնահատկության ու խնդիրների ըմբռնմանը, ինչպես նաև խթանի նրանց ստեղծագործական ակտիվությունը 1974 թ. ժողովրդատնտեսական պլանը ժամանակին կատարելու, իններորդ հնգամյակը հաջող ավարտելու համար:

Պրոպագանդիստներն ու ունկնդիրները պետք է ամենայն խորությամբ ուսումնասիրեն մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերը, ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերն ու կուսակցական այլ փաստաթղթեր, գիտական կոմունիզմի հրատապ պրոբլեմները: Անհրաժեշտ է հատկապես ուշադրություն դարձնել այն հարցերին, որոնք շոշափված են ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան և դեկտեմբերյան (1973 թ.) պլենումների որոշումներում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառերում և այլ փաստաթղթերում:

Մշտապես պետք է անդրադառնալ գիտատեխնիկական առաջընթացի արագացման, արտադրության արդյունավետության բարձրացման, կառավարման, տնտեսական գործունեության ոճի և մեթոդների կատարելագործման, աշխատանքի կուլտուրայի բարձրացման հարցերին, արդի փուլում կուսակցության ագրարային քաղաքականության պրոբլեմներին: Կարևոր են նաև աշխատավորների բարեկեցության ու կուլտուրական մակարդակի բարձրացման, ժողովրդի սոցիալական միասնության հետագա ամրապնդման, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման, ՍՄԿԿ միջազգային գործունեության և գաղափարախոսական պայքարին նվիրված հարցերը:

Միջազգային ասպարեզում խաղաղ գոյակցության սկզբունքների հաստատման պայմաններում ընդլայնվում ու բարդանում է գաղափարական պայքարը, մի անգամ ևս հաստատելով այն հայտնի դրույթը, որ խաղաղ գոյակցություն չի կարող լինել գաղափարախոսության բնագավառում:

Խորությամբ ուսումնասիրելով կուսակցական փաստաթղթերը, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի այն ճառերն ու ելույթները, որոնցում տրված է միջազգային իրադրության գիտական վերլուծությունը, հնարավոր է դառնում ճիշտ կողմնորոշվել միջազգային բարդ հարցերում, հիմնովին մերկացնել բուրժուական պրոպագանդայի կեղծությունը:

Ուսումնական պլաններում նախատեսված են Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի հաղթանակի 30-ամյակի հետ կապված թեմաներ, որոնք սովետական մարդու համազգային հպարտության, սովետական կենսահաստատ հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի արմատավորման լավ նախապայման կլինեն:

Քաղաքական և տնտեսագիտական կրթության սիստեմում պարապմունքների ժամանակ կուսակցական փաստաթղթերում եղած գաղափարա-տեսա-



կան դրույթների ու հետևությունների լայն օգտագործումը հնարավորություն է ընձեռում ամրապնդելու պրոպագանդայի կապը կյանքի հետ, զինելու ունկնդիրներին կուսակցության քաղաքականության տեսական հիմունքների խոր իմացությամբ, ընդլայնելու նրանց քաղաքական մտահորիզոնը:

Նոր ուսումնական տարում պետք է իրականացվեն ներգործուն միջոցառումներ՝ մարքս-լենինյան ուսուցման և տնտեսագիտական կրթության, ղեկավար կադրերի բարոյական ու ինտերնացիոնալ դաստիարակության բարելավման նպատակով: Ղեկավար կադրերի, ակտիվի տարբեր խմբերի, գիտական և ստեղծագործական մտավորականության կուսուսուցումը կազմակերպելիս հարկ է հաշվի առնել նրանց գիտելիքների մակարդակը, սոցիալական փորձն ու մասնագիտական հետաքրքրությունները: Նպատակահարմար է, որ մարքսիզմ-լենինիզմի ընդհանուր տեսական պրոբլեմներին զուգընթաց, կուսակցական, սովետական և տնտեսավարական կադրերը ուսումնասիրեն արդի տնտեսական ու սոցիալական հրատապ պրոբլեմները, գիտական հաստատությունների աշխատողները՝ գիտական հետազոտությունների մեթոդոլոգիան, գիտատեխնիկական հեղափոխության սոցիալ-տնտեսական ասպեկտները, բարձրագույն և միջնակարգ դպրոցների աշխատողները՝ կոմունիստական դաստիարակության տեսությունը, ստեղծագործական մտավորականությունը՝ գեղագիտության, ժամանակակից գաղափարական պայքարի հրատապ պրոբլեմները և այլն: Միաժամանակ թեմատիկան չպետք է ունենա նեղ մասնագիտական բնույթ, քաղաքական կրթությունը չվերածվի մասնագիտական վերապատրաստության: Իրեն լիովին արդարացրել է փոխկապված բոլոր պրոբլեմների ուսումնասիրման պրակտիկան (3—4 տարվա համար նախատեսված). դա հնարավորություն է տալիս ավելի նպատակասլաց կազմակերպել տեսական սեմինարների աշխատանքը, առավել խորությամբ ուսումնասիրել զարգացած սոցիալիզմի տեսական հարցերը, սոցիալ-տնտեսական, արտաքին-քաղաքական, գաղափարախոսական արմատական պրոբլեմները:

Բարձրագույն դպրոցները վաղուց ավարտած ունկնդիրների համար հարկավոր է կազմակերպել գիտական կոմունիզմի տեսության ուսումնասիրությունը, քանի որ անցյալում այն չկար ուսումնական հաստատությունների ծրագրում:

Կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեները պետք է կատարելագործեն ղեկավար կադրերի քաղաքական ուսուցման այնպիսի կարևոր ձևը, որպիսին կուսակցական ակտիվի դպրոցն է: Նոր ուսումնական տարում դպրոցների մեծ մասը պետք է ավարտի նախկինում սահմանված դասընթացների ուսումնասիրությունը: Ուսումնական պլանը լրիվ ավարտած քաղաքային դպրոցներում հարկավոր է ուսումնասիրել «Հանրային արտադրության արդյունավետության բարձրացումը սոցիալ-տնտեսական կարևոր խնդիր է» միամյա դասընթացը, շրջանային գյուղական դպրոցներում՝ «Արդի փուլում ՍՄԿԿ ագրարային քաղաքականությունը» և «Կոմունիստական շինարարության արդի փուլում ՍՄԿԿ դերի բարձրացումը» դասընթացները:

Կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեների, միությունների ու գերատեսչությունների կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում պետք է լինեն ղեկավար այն կադրերի ուսուցման հարցերը, որոնք տնտեսական կրթության սիստեմում ուսումնասիրում են «Գիտությունը և կառավարման պրակտիկան» կամ «Էկոնոմիկայի հիմունքները և արտադրության ղեկավարումը» դասընթացները:

Պրակտիկան ցույց է տվել, որ այդ դասընթացներում ուսուցումը հարկ է շարունակել նաև երրորդ տարում: Այդ անհրաժեշտ է առավել խորությամբ ուսումնասիրելու համար արտադրության արդյունավետության հետագա բարձրացման, ժողտնտեսության կառավարման կատարելագործման ուղիներն ու մեթոդները, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումներում, Լ. Ի. Բրեժնևի ելույթներում, կուսակցական այլ փաստաթղթերում աշխատանքի ոճին և մեթոդներին վերաբերող սկզբունքային դրույթները:

Քաղաքական ու տնտեսագիտական ուսուցումը պետք է սերտորեն կապվի աշխատանքի կուսակցական ոճի, տնտեսական գործունեության բոլոր ոլորտներում կուսակցական մոտեցման, հանձնարարված աշխատանքի տեղամասի, գլխավորած կոլեկտիվում գործերի վիճակի համար ղեկավարի անձնական պատասխանատվության բարձրացման հետ:

Կուսկոմիտեները պետք է խորամուխ լինեն մարքս-լենինյան կրթության բովանդակության մեջ, հսկողություն սահմանեն ղեկավար աշխատողների կողմից՝ մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունների, կուսակցական փաստաթղթերի ուսումնասիրության նկատմամբ, ըստ ամենայնի ծավալեն քաղաքական ու տնտեսագիտական ինքնակրթությունը:

Անհրաժեշտ է առավել պահանջկոտություն հանդես բերել քաղաքական, ինչպես և տնտեսագիտական կրթության տարրական և միջին օղակներում սովորողների նկատմամբ: Տարրական քաղդպրոցների ունկնդիրները, որոնք ավարտել են Վ. Ի. Լենինի կենսագրության և քաղաքական ու տնտեսական գիտելիքների հիմունքների դասընթացները, կուսումնասիրեն ՍՄԿԿ պատմությունը և գիտական կոմունիզմի հիմունքները: Այն ունկնդիրները, որոնք շարունակում են ուսուցումը տարրական օղակում, անցնելու են նոր դասընթաց՝ «ՍՄԿԿ ներքին և արտաքին քաղաքականության հարցերը»:

Միջին օղակներում կուսումնասիրեն քաղաքատնտեսություն, փիլիսոփայություն, գիտական կոմունիզմի հիմունքներ և ՍՄԿԿ պատմություն, ինչպես և հնարավորություն կունենան հմտանալու քաղաքական ինքնակրթության և մարդկանց հետ դաստիարակչական աշխատանք կատարելու բնագավառում: Այն ունկնդիրները, որոնք մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցներում ավարտել են ուսումնական դասընթացը, բայց չեն փոխադրվել բարձրագույն օղակ, պետք է խորությամբ ուսումնասիրեն մարքսիզմ-լենինիզմի բաղկացուցիչ մասերից որևէ մեկը, հատկապես գիտական կոմունիզմը, ինչպես նաև ՍՄԿԿ ներքին և արտաքին քաղաքականության հրատապ հարցերը:

Երևանի և Լենինականի կուսքաղկոմների, սկզբնական կուսկազմակերպությունների հատուկ հոգածության առարկան մարքսիզմ-լենինիզմի համալսարանի աշխատանքի պատշաճ կազմակերպումն է: Պարապմունքների բարձըր մակարդակը, լավ հաճախումը, մշտական օգնությունն ու հսկողությունը անհրաժեշտ պայման են մարքսիզմ-լենինիզմի համալսարանների առջև ծառացած խնդիրների հաջող լուծման համար:

Հարկավոր է մեծ ուշադրություն նվիրել կոմերիտական քաղուսուցմանը: Կոմերիտական լուսավորության ցանցում ուսումնասիրում են մարքսիզմ-լենինիզմի տեսությունը՝ սերտորեն կապված կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ, ՍՄԿԿ Կենտկոմի՝ ՀամԼԿԵՄ XVII համագումարին հղած ողջույնի հեռագրում, կոմերիտմիության համագումարի փաստաթղթերում և նյութերում, Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառում արծարծված դրույթներն ու խնդիրները:

Կոմերիտական տեսական սեմինարների թեմատիկան համապատասխանեցվել է կուսակցական ուսուցման սեմինարների թեմատիկային՝ հաշվի առնելով երիտասարդությանը վերաբերող պրոբլեմները: Հաստատված է նաև «Արդի փուլում ՍՄԿԿ ագրարային քաղաքականությունը» սեմինարի ուսումնական լրացուցիչ ծրագիրը:

Նոր ուսումնական տարում քաղաքական և տնտեսագիտական ուսուցման ցանցում կարևոր տեղ են գրավում պրոպագանդայի՝ պրակտիկայում իրենց արդարացրած այնպիսի ձևեր, ինչպիսիք են ժողովրդական համալսարանները և կոմունիստական աշխատանքի դպրոցները: Հանրապետությունում գործում են 400 ժողովրդական համալսարաններ: Կոմունիստական աշխատանքի 2.500 դպրոցներում անցյալ տարի ուսանել է ավելի քան 55,4 հազար մարդ: Հարկավոր է ամեն ինչ անել, որպեսզի պարապմունքները անցնեն բարձր մակարդակով, ունկնդիրների ակտիվ մասնակցությամբ:

Մեր կուսակցությունը, նրա լենինյան Կենտկոմը մշտապես հոգում են կուսակցական պրոպագանդիստների, գաղափարական բնագավառի կադրերի, կոմունիստական դաստիարակության գործին առնչվող բոլոր աշխատողների մասին: Ղեկավարվելով ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Բելոռուսիայի կուսակցական կազմակերպություններում գաղափարական կադրերի ընտրության և դաստիարակության ասպարեզում տարվող աշխատանքի մասին» որոշմամբ, հենվելով կուտակված փորձի վրա, յուրաքանչյուր կուսկոմիտե պետք է մշակի և կենսագործի ընդհանրապես գաղափարական կադրերի և, մասնավորապես, քաղաքական ու տնտեսագիտական կրթության սիստեմի պրոպագանդիստների ընտրության ու դաստիարակության միջոցառումներ:

Նոր ուսումնական տարում կուսկազմակերպությունները առավել կբարձրացնեն մարքս-լենինյան ուսուցման և տնտեսագիտական կրթության արդյունավետությունը:

## ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ




# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԿԵՆՍԱՀԱՍՏԱՏ ՈՒԺԸ

ՅՈՒ. Ռ. ԿՈՒՐԲԱՆՈՎ
Ուզբեկստանի կոմկուսի Կենտկոմի
քարտուղար

*Ուզբեկստանի աշխատավորները սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում հանդիսավորությամբ նշում են Ուզբեկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության և Ուզբեկստանի կոմունիստական կուսակցության կազմավորման կեսդարյա հոբելյանը։*

*Ուզբեկական ՍՍՀ-ի կազմավորումը, որն իրականացվեց Մեծ Հոկտեմբերի հաղթանակի շնորհիվ, պատմական հսկայական կարևորություն ունեցող իրադարձություն էր մեր ժողովրդի կյանքում։ Դրանում իր վառ արտահայտությունը գտավ կոմունիստական կուսակցության վարած լենինյան ազգային քաղաքականությունը։ «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կեսդարյա պատմությունը,— ՍՍՀՄ 50-ամյակի մասին իր զեկուցման մեջ նշեց Լ. Ի. Բրեժնևը,— սովետական սոցիալիստական պետության շրջանակներում միավորված բոլոր ժողովուրդների անխախտ միասնության ու բարեկամության առաջացման պատմությունն է։ Դա սոցիալիստական հեղափոխության կողմից ծնունդ առած և այսօր աշխարհի ամենազորեղ տերություններից մեկը դարձած պետության աննախընթաց աճի ու համակողմանի զարգացման պատմությունն է։ Դա նրա դրոշի ներքո համախմբված բոլոր հանրապետությունների, երկրում բնակվող բոլոր ազգերի և ազգությունների առնականացման և նրանց իսկական տնտեսական, քաղաքական ու կուլտուրական ծաղկման պատմությունն է»* (Լենինյան կուրսով, *հ. 4, էջ 55—56)։*

*Սովետական Ուզբեկստանի օրինակը մեր կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղարի այս խոսքերի ճշմարտացիության փայլուն ապացույցն է։ Առաջնորդվելով Վ. Ի. Լենինի նշած ուղիով, Ուզբեկստանի աշխատավորները, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, վիթխարի նվաճումների են հասել անցած կես դարում։ Սովետական կարգերի շնորհիվ Ուզբեկստանը,*



*շրջանցելով զարգացման կապիտալիստական փուլը, պատմական անցում կատարեց ֆեոդալիզմից դեպի սոցիալիզմ և այսօր հպարտությամբ զեկուցում է զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցման ասպարեզում ձեռք բերած իր տնտեսական, սոցիալ-քաղաքական ու հոգևոր առաջադիմության աննախընթաց նվաճումների մասին։*

*Որպեսզի իմաստավորենք ներկան, որի մեջ ապրում և աշխատում ենք և որն առօրեական է դարձել մեզ համար, հարկավոր է տեղյակ լինել անցյալին, այն իրավիճակին, որից մենք սկսեցինք մեր սոցիալիստական վերափոխումները, հարկավոր է, բացի այդ, քաջ ծանոթ լինել այն մեծ նվաճումներին, որ Միջին Ասիայի ժողովուրդները ձեռք են բերել Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ միավորվելուց հետո։ Նախահեղափոխական շրջանում ուզբեկ ժողովուրդը, միջինասիական մյուս ժողովուրդների նման, մի հավաք ամբողջություն չէր ներկայացնում և տարրալուծվել էր Թուրքեստանի գեներալ-նահանգապետության, Բուխարայի էմիրաթի ու Խիվայի խանության մեջ։ Միջինասիական ժողովուրդների այս վարչական-բյուրոկրատական տարանջատումը բխում էր ցարիզմի ու խաների ռեակցիոն քաղաքականության շահերից։ Նախահեղափոխական Թուրքեստանը, Վ. Ի. Լենինի արտահայտությամբ, իրենից «զտագույն տիպի» գաղութ էր ներկայացնում (Երկեր, հ. 22, էջ 455)։ Ցարիզմը, տեղի էմիրաթներն ու խանություններն այստեղ հաստատել էին շահագործման ամենադաժան ռեժիմ։ Աշխատավոր ժողովուրդը զրկված էր տարրական իրավունքներից և ենթարկվում էր սոցիալական ու ազգային ամենածանր ճնշման։ Ինչպես ռուսական կայսրության մյուս ծայրամասերում, այստեղ ևս նրան բաժին էին ընկել քաղաքական, տնտեսական ու կուլտուրական ահավոր հետամնացությունը, անգրագիտությունը, թշվառությունն ու աղքատությունը։*

*Ուզբեկ ժողովուրդը դարեր շարունակ հերոսական պայքար է մղել իր անկախության ու ազատության համար։ Ինչպես նշվում է հոբելյանի առթիվ Ուզբեկստանի կոմկուսի Կենտկոմի որոշման մեջ, մեր ժողովրդի ճակատագրի համար մեծ առաջադիմական նշանակություն ունեցավ Ռուսաստանի հետ Միջին Ասիայի միացումը, որը նպաստեց ո՛չ միայն երկրի տնտեսական ու կուլտուրական նկատելի տեղաշարժերին, այլև Ռուսաստանի առաջավոր մարդկանց, ռուսական պրոլետարիատի հետ Միջին Ասիայի աշխատավորների սերտ շփումների հաստատմանը, մարքսիզմ-լենինիզմի գաղափարների թափանցմանը Միջին Ասիա, ճնշողների դեմ համատեղ հեղափոխական պայքարի հիմքի վրա ռուս ժողովրդի ու մեր երկրի մյուս ժողովուրդների հետ միջինասիական ժողովուրդների մերձեցմանը, ազգային-ազատագրական շարժումը համառուսական հեղափոխական շարժման ընդհանուր միասնական հոսանքի հետ միացնելուն։*

*Միջին Ասիայում հեղափոխական-ազատագրական շարժումները ծավալվում ու զարգանում էին ռուսական պրոլետարիատի հերոսական ելույթների հետ սերտ առնչության պայմաններում։ Ռուսաստանի բանվոր դասակարգը, Լենինի գլխավորած կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, իր շուրջը համախմբեց մեր երկրի ողջ աշխատավորությանը և նրան վճռական մարտերի հանեց հանուն սոցիալիստական հեղափոխության հաղթանակի։ Մեծ Հոկտեմբերի հետ գրեթե միաժամանակ, սոցիալիստական հեղափոխություն ծավալվեց նաև Միջին Ասիայում։ 1917 թ. դեկտեմբերի վերջերին սովետական իշխանություն հաստատվեց համարյա ամբողջ Ուզբեկստանում, բացառությամբ Խիվայի ու Բուխարայի։ Սովետական կարգերի ամրապնդման համար էական նշանակություն ունեցան 1917 թ. վերջերին սովետական կառավարության հռչակած «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան» և «Ռուսաստանի ու Արևելքի բոլոր աշխատավոր մուսուլմաններին» ուղղված դիմումը։*

*Հենվելով սովետների երկրի եղբայրական ժողովուրդների օգնության վրա, Թուրքեստանի Ինքնավար Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը և Խորեզմի ու Բուխարայի Ժողովրդական Սովետական Հանրապետությունները ջախջախեցին ներքին հակահեղափոխական և օտարերկրյա ինտերվենցիայի*

ուժերը և կանգնեցին խաղաղ սոցիալիստական շինարարության ուղու վրա։

Միջինասիական ժողովուրդների տնտեսական, սոցիալ-քաղաքական ու կուլտուրական կյանքի սոցիալիստական վերակառուցման գործում կարևորագույն դեր խաղաց Վ. Ի. Լենինի՝ «Թուրքեստանի կոմունիստ ընկերներին» նամակը (1919 թ.), որտեղ հեղափոխության առաջնորդը կոմունիստների ուշադրությունը կենտրոնացնում էր գաղութային անցյալի մնացուկները վճռականորեն արմատախիլ անելու, Միջին Ասիայի յուրահատուկ պայմաններում կոմունիստական տեսությունն ու պրակտիկան հմտորեն կիրառելու վրա։ Լենինը դնում էր աշխատավորների ամեն տեսակի անհավասարությունները վերացնելու, տեղական բնակչությանը պետական ու տնտեսական շինարարության մեջ որքան հնարավոր է լայնորեն ներգրավելու, կրոնական և բուրժուանացիոնալիստական գաղափարախոսության դեմ վճռականորեն պայքարելու, աշխատավորներին պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու խնդիրները։ Լենինյան այս պատգամները հաջողությամբ իրականացված են կյանքում։

Սոցիալիստական շինարարության ընթացքում նպաստավոր պայմաններ ստեղծվեցին ՍՍՀՄ-ում ազգային-պետական շինարարության կատարելագործման համար։ 1924 թ. հոկտեմբերի 27-ին ստեղծվեց Ուզբեկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը։ 1925 թ. ապրիլին տեղի ունեցավ Ուզբեկստանի կոմունիստական կուսակցության առաջին համագումարը, որը կարևոր փուլ նշանավորեց հանրապետության կուսակազմակերպության կազմավորման բնագավառում և նշեց այն հիմնական խնդիրները, որ սոցիալիստական շինարարության ասպարեզում պետք է լուծեին հանրապետության աշխատավորները։

Սովետական ժողովրդի եղբայրական համագործակցության կենարար ուժը Ուզբեկստանն զգաց արդեն սովետական իշխանության առաջին տարիներին։ Մոսկվան և Լենինգրադը, Ուրալը և Ուկրաինան Ուզբեկստան էին ուղարկում քարածուխ ու նավթամթերք, չուգուն և պողպատ, մեքենաներ և շինանյութեր։ Կենտրոնական շրջաններից մեզ մոտ աշխատելու էին գալիս բարձրորակ բանվորներ, փորձառու ինժեներներ ու ճանաչված գիտնականներ, որոնք իրենց փորձն ու գիտելիքները հաղորդում էին տեղի մասնագետներին։ Սոցիալիստական շինարարության ասպարեզում ձեռք բերած մեր նվաճումների համար մենք պարտական ենք սովետական բոլոր ժողովուրդների, ամենից առաջ ռուս մեծ ժողովրդի, նրա բանվոր դասակարգի ամենօրյա անշահախնդիր օգնությանը։

Սոցիալիստական վերափոխումների, եղբայրական հանրապետությունների օգնության շնորհիվ Ուզբեկստանը դարձավ զարգացած էներգետիկայի, մեքենաշինության, գունավոր մետալուրգիայի, քիմիայի, ինքնաթիռաշինության, էլեկտրատեխնիկական ու էլեկտրոնային արդյունաբերության հանրապետություն։ Այսօր Ուզբեկստանի մակնիշով արտադրանք են թողարկում արդյունաբերության ավելի քան հարյուր ճյուղեր։ Մեզ մոտ են արտադրվում բամբակենու մշակության ու բերքահավաքի բոլոր հիմնական մեքենաները և բամբակազտիչ արդյունաբերության սարքավորումները։ Արդյունաբերական արտադրանքի ծավալը, 1924 թ. համեմատությամբ, աճել է 135 անգամ։ Միութենական արտադրության մեջ մեր հանրապետության տեսակարար կշիռը էլեկտրաէներգիայի արտադրության ասպարեզում կազմում է 3, պարարտանյութերինը՝ 7,4, բուսական յուղինը՝ 13, գազի հանույթինը՝ 16 տոկոս։

Ուզբեկստանի էկոնոմիկան միութենական ժողովրդատնտեսական կոմպլեքսի օրգանական մասն է։ Նրա զարգացման կեսդարյա պատմությունն ակնբախորեն հաստատում է կենտրոնացված խոշոր ժողովրդական տնտեսության առավելությունների վերաբերյալ լենինյան դրույթների մեծ ճշմարտացիությունը։ Հենց ընդհանուր միութենական միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի մեջ է առավելագույն ձևով ապահովվում ազգային ու ինտերնացիոնալ խնդիրների զուգակցումը։



Ուզբեկական ՍՍՀ-ն միութենական մյուս հանրապետություններ է ուղար-
կում բամբակ, բամբակագործության մեքենաներ, տեքստիլ սարքավորումներ
և այլն։ Հանրապետության արդյունաբերական արտադրանքն այսօր առաքվում
է արտասահմանյան 70 երկրներ։ Իր հերթին Ուզբեկստանը եղբայրական հան-
րապետություններից ստանում է իրեն անհրաժեշտ արդյունաբերական արտա-
դրանքն ու հումքը։
Անցած 50 տարում արմատական տեղաշարժեր են կատարվել սոցիալա-
կան հարաբերությունների բնագավառում։ 1920 թվականին ֆաբրիկա-գործա-
րանային բանվորների թիվը հազիվ անցնում էր 13 հազարից։ Այժմ Ուզբեկ-
ստանի բանվոր դասակարգի հզոր ջոկատն իր մեջ ընդգրկում է մոտ երկու մլն
մարդ։
Սոցիալիստական վիթխարի վերափոխումներ են տեղի ունեցել գյուղա-
տնտեսության մեջ։ «Սոցիալիզմ կառուցելու համար պետք էր ոչ միայն ստեղ-
ծել հզոր արդյունաբերություն, այլև իրագործել գյուղի սոցիալիստական վե-
րակառուցումը,— ասել է Լ. Ի. Բրեժնևը։— Դա չափազանց դժվարին խնդիր
էր։ Պետք էր հաղթահարել մանր սեփականատիրոջ սովորույթի դարավոր ու-
ժը, նրա հետաքրքրությունների և կյանքի նկատմամբ ունեցած հայացքների
նեղությունը, փոխել նրա հոգեբանությունը։ Հարկավոր էր գյուղացի-ինդի-
վիդուալիստին դարձնել կոլեկտիվ աշխատանքի ու հասարակական կյանքի ակ-
տիվ մասնակից» (Լենինյան կուրսով, հ. 2, էջ 117—118)։
Սովետական իշխանության առաջին իսկ օրերից, չնայած սովետների երի-
տասարդ երկրի առջև ծառացած անասելիորեն ծանր դժվարություններին, կու-
սակցությունը, անձամբ Վ. Ի. Լենինն անդուլ հոգատարություն էին հանդես բե-
րում Թուրքեստանում գյուղատնտեսության զարգացման նկատմամբ։ Արդեն
1918 թ. մայիսին հրապարակվեց Թուրքեստանում ոռոգիչ աշխատանքների
համար 50 մլն ռուբլի հատկացնելու մասին դեկրետը, որով և դրվեց գյուղա-
տնտեսությունը սոցիալիստական ռելսերի վրա փոխադրելու գործի սկիզբը։
Առաջին համաշխարհային, իսկ այնուհետև քաղաքացիական պատերազմ-
ների հետևանքով Թուրքեստանի առանց այն էլ հետամնաց էկոնոմիկան խիստ
անկում էր ապրել։ Առանձնապես տուժել էր բամբակագործությունը։ Ելնելով
ստեղծված իրադրությունից, Ժողկոմխորհը 1920 թ. նոյեմբերին որոշում ըն-
դունեց բամբակագործությունը վերականգնելու մասին։ Այդ կարևոր ճյուղի
զարգացման համար սովետական կառավարությունը ձեռնարկեց տնտեսական
ու կազմակերպական մի շարք միջոցառումներ։ 1923 թ. օգոստոսին Աշխատան-
քի և պաշտպանության խորհուրդը բամբակագործներին ուղարկեց պարեն, ար-
դյունաբերական և առաջին անհրաժեշտության այլ ապրանքներ։ Ռուսաստանի
աշխատավորները, հավատարիմ իրենց ինտերնացիոնալ պարտքին, այդպիսով,
օգնեցին նաև գյուղատնտեսության վերականգնմանը։ Արդեն Ուզբեկստանի
Սոցիալիստական Հանրապետության կազմավորման առաջին տարում, 1920 թ.
համեմատությամբ, բամբակենու ցանքատարածությունները ավելացան չորս
անգամ, իսկ հումքի արտադրությունը հասավ 375 հազար տոննայի։ Միջին
Ասիայում ռոոգման գործի զարգացմանը անգնահատելի ծառայություն մատու-
ցեցին ռուսական գիտության կորիֆեյներ Կ. Ա Տիմիրյազևը, Վ. Վ. Դոկուչաևը,
Պ. Ա. Կոստիչևը, Ա. Պ. Պրյանիշնիկովը, Վ. Ռ. Վիլյամսը։ Հայրենական բամ-
բակագործության զարգացման բնագավառում մեծ ավանդ են ներդրել գիտ-
նականներ Գ. Ս. Զայցևը, Ե. Լ. Նավրոցկին, Վ. Ս. Մալիգինան, Ս. Ս. Կանաշը
և ուրիշներ, որոնք նոր բարձունքների հասցրին մեր բամբակագործությունը և
քիչ բան չարեցին տեղում գիտական կադրեր պատրաստելու ասպարեզում։
Սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման գործում պատմական
դեր խաղաց լենինյան կոոպերատիվ պլանի իրականացումը։ 1935 թ. Ուզբեկ-
ստանի բամբակագործները գերազանցեցին մեկ մլն տոննայի բնագիծը։ Կո-
լեկտիվ սոցիալիստական գյուղատնտեսության առավելությունները դրսևորվե-
ցին նաև պատերազմական փորձության ծանր տարիներին, ինչպես նաև ժողո-
վրդական տնտեսության վերականգնման շրջանում։ 1950 թ. մեր բամբակա-
գործները նվաճեցին երկու միլիոնի բնագիծը։ Գյուղատնտեսության, հատկա-

տություններում ընդգրկված են 28 հազար գիտաշխատողներ, որոնց թվում՝ ավելի քան 100 ակադեմիկոսներ ու թղթակից-անդամներ, 500-ից ավելի դոկտորներ, 9 հազար գիտության թեկնածուներ: Հանրապետության գիտնականներն աչքի ընկնող նվաճումների են հասել գիտության շատ բնագավառներում՝ մաթեմատիկայի, ֆիզիկայի, քիմիայի, կենսաբանության, բժշկագիտության ասպարեզներում: Հատկանշական է, որ «Բնական միացությունների քիմիա» և «Հելիոտեխնիկա» միութենական հանդեսների հրատարակությունը հանձնարարված է մեր գիտությունների ակադեմիային: Բամբակագործության ասպարեզում մեր գիտնականների հետազոտությունները լայն ճանաչում են գտել ինչպես մեր երկրում, այնպես էլ արտասահմանում: Նկատելի հաջողությունների է հասել հասարակագիտությունը:

Ընդլայնվում է մշակութային հաստատությունների ցանցը: Մեր երկու կինոստուդիաներն իրենց գոյության ընթացքում թողարկել են 547 կինոնկար, որից 110-ը՝ գեղարվեստական: Հանրապետությունում հրատարակվում են հարյուրավոր լրագրեր ու ամսագրեր, գրքերի տարեկան տպաքանակը անցնում է 32 մլն-ից:

Ծաղկել, բովանդակությամբ և ձևով անհամեմատ ավելի են հարստացել գրականությունն ու արվեստը: Աճել է տաղանդավոր գրողների, նկարիչների, կոմպոզիտորների, ճարտարապետների, բեմարվեստի գործիչների մի հրաշալի համաստեղություն: Ուզբեկական սովետական կուլտուրան սնվում է ոչ միայն սեփական աղբյուրներից, այլև ուժ է առնում եղբայրական մյուս ժողովուրդների հոգևոր մշակույթից:

Սոցիալիստական հասարակարգը արմատապես լուծեց մեզ համար խիստ կարևոր մի պրոբլեմ՝ կնոջ ազատագրման խնդիրը: Այժմ ուզբեկ աշխատավորուհին նոր կյանքի ակտիվ կառուցողն է, նա իր արժանի ավանդն ունի մեր բոլոր նվաճումների մեջ:

Այն բոլոր հաջողությունները, որ ձեռք է բերել Ուզբեկական ՍՍՀ-ն, բոլոր հարստությունները, որ 50 տարում ստեղծվել են նրա սքանչելի հողում՝ արդյունք են մեր ողջ երկրի բոլոր ազգերի ու ազգությունների անձնվեր աշխատանքի: Դա նրանց ընդհանուր նվաճումն է, եղբայրական բարեկամության, փոխօգնության, լենինյան ազգային քաղաքականության կենսագործման արդյունքը, համազգային հպարտության առարկան:

Մեր երկրի ժողովուրդների բարեկամությունն իր ամբողջ վեհությամբ դրսևորվեց 1966 թ. Տաշքենդում տեղի ունեցած երկրաշարժի ծանր հետևանքները վերացնելու ժամանակ: ՍՍՀՄ բոլոր ժողովուրդները եղբայրական օգնության ձեռք մեկնեցին Ուզբեկստանի մայրաքաղաքին: Կարճ ժամանակում քաղաքը ո՛չ միայն վեր հառնեց փլատակներից, այլև ըստ էության նորից վերաստեղծվեց՝ դառնալով մեր երկրի ժողովուրդների եղբայրական բարեկամության խորհրդանիշ:

Իր եղբայրների հանդեպ պարտքի տակ չի մնում նաև ուզբեկ ժողովուրդը: Երբ 1968 թ. Թուրքմենական ՍՍՀ Ջարջոու քաղաքը խիստ տուժեց ջրհեղեղից, իսկ հետո երկրաշարժը ավերածություններ պատճառեց Կիրգիզիայում և Դաղըստանում, Ուզբեկստանի աշխատավորները օգնության հասան իրենց եղբայրներին և կառուցեցին տասնյակ բնակելի շենքեր ու այլ օբյեկտներ:

Ժողովուրդների բարեկամության, միասնական ընտանիքի զգացումը, որ մեր մարդկանց մեջ դաստիարակել է կոմունիստական կուսակցությունը, սուրբ զգացում է բոլորիս համար: Ուզբեկստանի աշխատավորները քաջ գիտակցում են, որ այդ բարեկամության ու եղբայրության մեջ է գալիք հաղթանակների գրավականը:

Հաջողությունները օրինական հպարտությամբ են լցնում մեր սրտերը: Բայց մենք, ինչպես սովորեցնում էր Վ. Ի. Լենինը, ուշադրությունը կենտրոնացնում ենք արմատական խնդիրների լուծման վրա, ձգտում հասնել ավելի մեծ նվաճումների: Ընթացիկ հնգամյակում սովետական ամբողջ ժողովրդի հետ միասին հսկայական խնդիրներ են իրագործում նաև մեր հանրապետության աշխատավորները: Ուզբեկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության կա-



պիտալ ներդրումները հնգամյակում կազմում են 20 մլրդ ռուբլի: Արդյունաբերական արտադրանքի ծավալը կաճի մեկուկես անգամ, կրկնակի ավելանալու են հիմնական արտադրական ֆոնդերը: Կավարտվի Միջին Ասիա-Կենտրոն գազամուղի առաջին գծի սարքավորումը և կսկսվի երկրորդի շինարարությունը: Շարք կմտնեն Կարշինի՝ տեխնիկական լուծումներով եզակի այդ մագիստրալային ջրանցքն ու Անդիջանի ջրամբարը: Ուզբեկստանի բամբակագործները լի են հոբելյանական տարում «սպիտակ ոսկու» արտադրությունը հինգ մլն տոննայի հասցնելու վճռականությամբ: Իրագործվում է մեծ ծավալի բնակարանային շինարարություն, Տաշքենդում կգործի մետրոյի առաջին գիծը:

Սրանք մեր ստեղծագործ աշխատանքի մերձավոր նշանակետերն են, որոնք իրենց վիթխարիությամբ նոր եռանդ են հաղորդում: Ուզբեկստանի աշխատավորները հավաստիացնում են կոմունիստական կուսակցությանը, եղբայրական մյուս հանրապետություններին, որ իրենք անթերի կկատարեն ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած կոմունիստական շինարարության խնդիրները: Դրա գրավականը համաժողովրդական լայն մրցությունն է, մասսաների նախաձեռնությունն ու ստեղծագործությունը, սովետական ժողովրդի անխախտ բարեկամությունն ու փոխադարձ օգնությունը:

Մեր հանրապետությունը դեպի Ուզբեկական ՍՍՀ-ի և Ուզբեկստանի կոմունիստական կուսակցության կազմավորման կեսդարյա հոբելյանն է գնում ուժերի բուռն ծաղկման շրջանում: Կոմունիստները, ինչպես միշտ, գլխավորում են աշխատավորների աննախընթաց ստեղծագործական խանդավառությունը: Աշխատանքային փառապանծ սխրանքներում, առօրյա գործերի հերոիկայում է՛լ ավելի են ամրապնդվում մեր ժողովուրդների բարոյական բարձր որակները՝ սովետական հայրենասիրությունն ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմը, որոնք սովետական ապրելակերպի անքակտելի գծերն են:

Մեր հանրապետության կեսդարյա ճանապարհը Սովետական Միության կոմունիստական կուսակցության, սովետական պետության լենինյան ազգային քաղաքականության, մարքս-լենինյան վերափոխիչ ուսմունքի կենարար ուժի համոզիչ վկայությունն է: Մարքսիզմ-լենինիզմի գաղափարներին, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին հավատարիմ՝ Ուզբեկստանի կոմունիստական կուսակցությունը հոբելյանը դիմավորում է ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջ սերտորեն համախմբված, պատվով կրելով կոմունիզմի համար մղվող պայքարում հանրապետության աշխատավորների մարտական ավանդարդի բարձր կոչումը:



# ՀԱՎԱՍԱՐՆԵՐԻ ՀԱՄԱՍՏԵՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ

**Ի. Ռ. ՌԱՀԻՄՈՎԱ**
Տաջիկստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար

Նշելով հանրապետության ու նրա կուսակցական կազմակերպության փառապանծ հիսնամյակը, Սովետական Տաջիկստանի աշխատավորները հպարտության զգացումով հետադարձ հայացք են նետում պայքարի, աշխատանքի ու հաղթանակների կեսդարյա ճանապարհին, որ նրանք անցել են եղբայրական մյուս հանրապետությունների ժողովուրդների հետ ուս-ուսի՝ լենինյան մեծագործ կուսակցության իմաստուն ղեկավարությամբ։ Զուտ ժամանակագրական առումով մեզ ընդամենը մի քանի տասնամյակ է բաժանում այդ ճանապարհի սկզբից, բայց այն իրավիճակը, որից մենք սկսեցինք նոր կյանքի կառուցումը, միջնադարի խավարից ու հետամնացությունից, ըստ էության, չէր զանազանվում։ Ֆեոդալական ու կիսաֆեոդալական հարաբերություններ, աներևակայելի հետամնացություն ու իրավազրկություն՝ ահա երկու խոսքով այն ամենը, ինչ մենք ժառանգեցինք անցյալից։ Այսօր Տաջիկստանը ժամանակակից առաջընթացի չափանիշներով նվաճել է հասարակական կյանքի բոլոր ոլորտների գագաթները. դա զարգացած սոցիալիստական հասարակարգ ներկայացնող հանրապետություն է, որտեղ իրականացված սոցիալ-տնտեսական ու կուլտուրական վիթխարի վերափոխումները մեկ անգամ ևս հաստատում են մարքս-լենինյան գաղափարների մեծ ու կենսահաստատ ուժը։

Չնայած նրան, որ Թուրքեստանը մտնում էր կապիտալիստական ռուսական կայսրության մեջ, զարգացման մակարդակով այն դեռ խիստ ետ էր մնում կենտրոնական շրջաններից։ Միջին Ասիայի ժողովուրդների կյանքում ու կենցաղում տիրապետողը ֆեոդալական ու տոհմական հարաբերություններն էին, նրանց կուլտուրական զարգացումը խիստ դանդաղում էր հոգևորականության ռեակցիոն գաղափարախոսության ազդեցության հետևանքով։

Մշակելով սոցիալիստական հեղափոխության տեսությունը, Վ. Ի. Լենինը նշում էր, որ այն «...չի կարող այլ կերպ տեղի ունենալ, քան իբրև մի դարաշրջան, որ միացնում է պրոլետարիատի քաղաքացիական կռիվը բուրժուազիայի դեմ առաջավոր երկրներում և մի ամբողջ շարք դեմոկրատական ու հեղափոխական, այդ թվում ազգային-ազատագրական շարժումներ, չզարգացած, հետամնաց և ճնշված ազգերի մեջ» (Երկեր, հ. 23, էջ 67)։ Հետևաբար, Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխության հաջող իրականացման համար անհրաժեշտ էր երկրի զարգացած շրջաններում բուրժուազիայի դեմ պրոլետարիատի պայքարը միացնել Միջին Ասիայի, Կովկասի և ազգային մյուս ծայ-



ռամասերի հետամնաց ու ճնշված ժողովուրդների հեղափոխական և դեմոկրատական շարժումների հետ։

Խոսելով ցարական Ռուսաստանի կազմում Թուրքեստանի տեղի ու դրության մասին, Վ. Ի. Լենինը հանգում է այն հետևության, որ սոցիալական ու ազգային ճնշումից այդ երկրամասի ժողովուրդների ազատագրումը կապված է մետրոպոլիայում հեղափոխության հաղթանակի հետ։ Նա առաջ է քաշում Արևելքի ճնշված ժողովուրդների հետ զարգացած երկրների պրոլետարիատի դաշինքի վերաբերյալ համարձակ գաղափարը։ Թուրքեստանի բոլշևիկների համար դա միակ ճիշտ դիրքորոշումն էր սոցիալիստական հեղափոխության համար մղվող պայքարում։ Միևնույն ժամանակ, Վ. Ի. Լենինը ուղղակի նշում էր, որ սկզբնական շրջանում պայքարի գլխավոր ուղղությունը Թուրքեստանում ուղղված կլինի ոչ թե կապիտալի, այլ ֆեոդալական-տոհմական ժառանգության մնացուկների դեմ, ֆեոդալական ճնշման, միջնադարի մնացուկների դեմ։

Մեծ Հոկտեմբերը մեր երկրի բոլոր ժողովուրդներին ազատագրեց սոցիալական ու ազգային ճնշումից և առաջին անգամ ռեալ հնարավորություն ստեղծեց հետամնաց ժողովուրդների ոչ կապիտալիստական զարգացման մասին մարքս-լենինյան ուսմունքի պրակտիկ կենսագործման համար։

Սովետական իշխանության հաստատման նպատակով Տաջիկստանի աշխատավորների պայքարը մեր ժողովրդի պատմության սքանչելի, հերոսական էջերից է։ Այդ պայքարի ընթացքում կոփվեցին ու ամրապնդվեցին ռուս մեծ ժողովրդի և մեր բազմազգ հայրենիքի մյուս ժողովուրդների հետ տաջիկ ժողովրդի բարեկամությունն ու եղբայրական դաշինքը։

Պատմական հանգամանքների բերումով տաջիկ ժողովուրդը մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունը ցրված էր Միջին Ասիայի տարբեր շրջաններում, իսկ դրանցում սովետական կարգերի հաղթանակը ձեռք բերվեց ոչ միաժամանակ և նույնիսկ ոչ միևնույն ուղիներով։ Թուրքեստանի գեներալ-նահանգապետության մեջ մտնող շրջաններում սովետական իշխանությունը հաղթանակեց հիմնականում 1917-ի վերջերին և 1918-ի առաջին կեսին։ Տաջիկստանի կենտրոնական և հարավային շրջաններում, որոնք գտնվում էին Բուխարայի էմիրաթի կազմում, հաղթանակեց ժողովրդա-դեմոկրատական հեղափոխությունը, և սովետական կարգեր հաստատվեցին 1921 թ. փետրվար—ապրիլին։

Միջինասիական սովետական հանրապետությունների ազգային պետականության զարգացման ամբողջ պատմությունը մի համոզիչ ապացույց է այն բանի, թե ինչպիսի հետևողականությամբ և իմաստնությամբ է մեր կուսակցությունն իրագործում իր լենինյան ազգային քաղաքականությունը։ 1924 թ. հոկտեմբերին, հենց որ դրա համար անհրաժեշտ պայմաններ ստեղծվեցին, Միջին Ասիայում անցկացվեց ազգային-տերիտորիալ սահմանազատում։ Թուրքեստանի, Բուխարայի ու Խորեզմի սովետական հանրապետությունների փոխարեն ստեղծվեցին ազգային միութենական և ինքնավար հանրապետություններ ու մարզեր։ Կազմակերպվեց նաև Տաջիկական Ինքնավար Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը, որը մտնում էր Ուզբեկական ՍՍՀ-ի, իսկ նրա միջոցով՝ ՍՍՀՄ-ի կազմի մեջ։ Ազգային սահմանազատման հատկանիշներին համապատասխան, վերակազմավորվեցին նաև Թուրքեստանի, Բուխարայի և Խորեզմի կոմկուսակցությունները։ Տաջիկստանի կուսկազմակերպությունը սկզբում ձևավորվեց մարզային կազմակերպության իրավունքներով և ՌԿ(բ)Կ-ի կազմի մեջ էր մտնում Ուզբեկստանի կոմկուսի միջոցով։

Տաջիկական ԻՍՍՀ-ն միավորում էր գերազանցապես տաջիկներով բնակեցված շրջանները, ինչպես նաև Լեռնային Բադախշանի ինքնավար մարզը, որն ստեղծվեց 1925 թ., Պամիրում։ Տաջիկստանն այդ ժամանակ Միջին Ասիայի ամենահետամնաց շրջաններից էր։ Բնակչության մեծ մասը աշխարհից կտրված էր անանցանելի լեռնաշղթաներով, Տաջիկստանը կարող էր ճանապարհազրկության կլասիկ օրինակ ծառայել։ Մարդիկ մեկուսացած կյանք էին վարում ու զբաղվում բնատնտեսությամբ։ Գրեթե ամբողջ բնակչությունը անգրագետ էր և գտնվում էր կրոնական դոգմաների խիստ ազդեցության ներ-

քը։ Դա էր գլխավոր պատճառներից մեկը, որ Տաջիկստանում, հատկապես նախկին Արևելյան Բուխարայի շրջաններում երկար տարիներ գործում էր հակահեղափոխական շարժումը՝ բասմաչությունը։ Այդ տարիներին դեռևս դանդաղ էր ծավալվում տնտեսական ու կուլտուրական շինարարությունը։ Ռազմա-քաղաքական իրադրության բարդությամբ էր պայմանավորված ժամանակավոր կառավարության ստեղծումը՝ ի դեմս Տաջիկական ԻՍՍՀ հեղկոմի։

Սակավանդամ էր մարզային կուսկազմակերպությունը և կազմակերպչորեն դեռևս բավականաչափ ամրապնդված չէր։ Այսպես, Պամիրի կուսկազմակերպությունն իր շարքերում ընդգրկում էր ընդամենը 24 մարդ, արևելաբուխարականը՝ 113 և այլն։ Ընդ որում, դրանց կեսից ավելին դեռևս կուսանդամության թեկնածուներ էին։ Եվ այնուամենայնիվ, մարզային կուսկազմակերպությունը պատվով կատարեց աշխատավորների ավանգարդի իր դերը։ Մինչև 1926 թ. նրա գործունեությունը գլխավորապես ուղղված էր բասմաչների հակահեղափոխական մնացուկների լիկվիդացմանը, սովետական կարգերի ամրապնդմանն ու խաղաղ կյանքի կազմակերպմանը։

Բասմաչության դեմ պայքարի արմատական միջոցներ ձեռնարկվեցին հատկապես այդ առթիվ ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի 1925 թ. հունվարի 27-ի որոշումից հետո։ Տեղական բնակչության շրջանում քաղաքական աշխատանքն ուժեղացնելու նպատակով հարևան հանրապետություններից Տաջիկստան գործուղվեց կուսակցական-քաղաքական աշխատողների մի մեծ խումբ։ Հանրապետությունում միջոցներ ձեռնարկվեցին տնտեսական կյանքն աշխուժացնելու, արդյունաբերական ապրանքների մատակարարումը բարելավելու, դեհկանական տնտեսությունները վարկավորելու նպատակով։ Կուսակցության ճիշտ քաղաքականության շնորհիվ, որը ելնում էր հանրապետության կոնկրետ պատմական պայմաններից, 1926 թ. վերջ տրվեց բասմաչությանը։

Ռազմա-քաղաքական հաջողությունները, դեհկանների դասակարգային ինքնագիտակցության ու քաղաքական ակտիվության բարձրացումը հնարավորություն ընձեռեցին 1926 թ. ամենուրեք հեղկոմները փոխարինելու իշխանության ընտրական մարմիններով՝ սովետներով, պետության կառավարման մեջ ներգրավելու աշխատավորների լայն զանգվածներին։

Պայքարի բովում դգալիորեն աճեց ու կոփվեց հանրապետության կուսակցական կազմակերպությունը, ամրապնդվեցին աշխատավորների հետ նրա կապերը։ Այդ ամենը նպաստեց նրա հեղինակության ու ղեկավար դերի բարձրացմանը։

Ժողովրդական տնտեսության վերականգնման շրջանում (1926—1928 թթ.) առանձնահատուկ կարևորություն էր ստանում գյուղում տարվող քաղաքականությունը։ Գյուղատնտեսության վերելքն ապահովելու և չքավոր դեհկանությանը բայական պարտագրերից ազատելու նպատակով կարգավորվեց սպառողական, վարկային, գյուղատնտեսական, մելիորատիվ, բամբակագործական կոոպերացիաների աշխատանքը, որոնց միջոցով սովետական իշխանությունը օգնություն էր ցույց տալիս չքավորությանը և կազմակերպում էր աշխատավոր դեհկանությանը արտոնյալ պայմաններով սերմ ու ինվենտար մատակարարելու գործը։ Կուսակցական կազմակերպությունները, սովետները, արհմիություններն ու կոմերիտմիությունը այդ շրջանում լայն աշխատանք ծավալեցին կանանց մեջ։ Հետևողական պայքար էր տարվում ֆեոդալական-բայական վերապրուկների՝ բազմակնության, անչափահասներին կնության տալու, ղալիմ վճարելու և նման այլանդակ երևույթների դեմ։

Սոցիալ-տնտեսական մեծ վերափոխությունները, որ տեղի էին ունեցել մեր հանրապետությունում, անհրաժեշտ նախադրյալներ ստեղծեցին Տաջիկական ԻՍՍՀ-ն միութենական հանրապետության վերակազմելու համար, որը և իրագործվեց 1929 թ. հոկտեմբերին։ Տաջիկական ՍՍՀ կազմավորումը շրջադարձային կետ էր մեր ժողովրդի պատմական ճակատագրում։ ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականության հետևողական իրականացման շնորհիվ տաջիկ ժողովուրդը, դարավոր մասնատվածությունից հետո, ձեռք բերեց իր պետակա-



նությունը, կանգնեց ազգային վերածննդի, սոցիալիստական ազգի կոնսոլիդացման ուղու վրա։

Տաջիկական ՍՍՀ կազմավորումը կարևոր դեր խաղաց աշխատավորների քաղաքական ակտիվությունը բարձրացնելու, պետական և կուլտուրական շինարարության մեջ նրանց լայնորեն ներգրավելու գործում։ Սովետական իշխանության տարիներին տաջիկ ժողովուրդը սոցիալիստական զարգացման ճանապարհին վիթխարի հաջողությունների հասավ։ Հարկ է նշել, որ մեր հանրապետությունում սոցիալիստական շինարարության առանձնահատկությունները պայմանավորված էին գլխավորապես տնտեսական ու կուլտուրական հետամնացությամբ, որն անհրաժեշտ էր հաղթահարել բացառիկ կարճ ժամանակամիջոցում։ Այդ գործում, զարգացման կապիտալիզմի փուլը շրջանցելու, ֆեոդալիզմից անմիջապես սոցիալիզմին անցնելու գործում էր աճա, որ տաջիկ ժողովրդին համակողմանի օգնություն ցույց տվեցին կոմունիստական կուսակցությունն ու սովետական պետությունը, մեր մեծ Միության եղբայրական բոլոր հանրապետությունները։

Չնայած իր առանձնահատկություններին, սոցիալիզմի շինարարությունը Տաջիկստանում իրականացվեց լենինյան պլանին խիստ համապատասխան, որը նախատեսում է հանրապետության ինդուստրիալ զարգացում, գյուղատնտեսության կոլեկտիվացում, կուլտուրական հեղափոխության իրականացում։ Տարբերությունը միայն դրանց իրագործման ժամկետների և տեմպերի մեջ էր։

Տաջիկստանում սոցիալիստական ինդուստրացումը նկատելիորեն ավելի ուշ սկսվեց, քան երկրի կենտրոնական շրջաններում, և իրագործվեց ոչ թե մեկուսացված ձևով, այլ ՍՍՀՄ ինդուստրացման ողջ պրոցեսի հետ սերտ առնչությամբ։ Բնական և էներգետիկ ռեսուրսների անբավարար հետազոտվածության, ճանապարհների ու հաղորդակցության միջոցների, փոքր ի շատե խոշոր արդյունաբերական ձեռնարկությունների, ինդուստրիալ բանվոր դասակարգի և արտադրա-տեխնիկական ինտելիգենցիայի բացակայության պատճառով հանրապետության ինդուստրացումն սկսվեց սննդի ու թեթև արդյունաբերության զարգացմամբ, որի համար հումք էր ծառայում գյուղատնտեսության, մասնավորապես բամբակագործության ու շերամապահության արտադրանքը։ Դա միանգամայն համապատասխանում էր արդյունաբերության ռացիոնալ տեղաբաշխման սոցիալիստական սկզբունքին և նպաստում էր, մի կողմից, հանրապետության տնտեսական հետամնացության արագ հաղթահարմանը, մյուս կողմից՝ Սովետական Միության ամբողջ էկոնոմիկայի զարգացմանը։ Տաջիկստանում սոցիալիստական արտադրահարաբերությունների զարգացումը հենվում էր ամբողջ երկրի նյութատեխնիկական բազայի և ժողովուրդների եղբայրական համագործակցության վրա։

Սոցիալիստական ինդուստրացման ընթացքում մեզ մոտ ստեղծվեց ժամանակակից բազմաճյուղ արդյունաբերություն։ Ձևավորվեց իր կազմով բազմազգ, աշխարհայացքով ինտերնացիոնալիստական բանվոր դասակարգը, որը դարձավ Տաջիկստանի կոմունիստական կուսակցության հենարանը, հանրապետությունում սոցիալիստական շինարարության առաջատար ուժը։ Այժմ մեզ մոտ հաշվվում է 380 խոշոր ձեռնարկություն, որոնք ներկայացնում են արդյունաբերության հարյուր ճյուղ։ Տաջիկստանի արդյունաբերական արտադրանքը, այն Տաջիկստանի, որն անցյալում ներմուծում էր անգամ մեխն ու սայլանիվի քայլուղը, այժմ առաքվում է արտասահմանյան 42 երկրներ։

Հարուստ հանքավայրերի հիմքի վրա հանրապետությունում ստեղծվել է հզոր լեռնահանքային արդյունաբերություն։ Յավանում կառուցվում է խոշոր էլեկտրաքիմիական կոմբինատ, Ռեգարում սարքավորվում է ալյումինի գործարան, որի առաջին հերթը շարք կմտնի ընթացիկ տարվա վերջին։

Մեզ մոտ առավել բարձր տեմպերով է զարգանում էներգետիկան։ Եթե 1932 թ. բոլոր էլեկտրակայանների հզորությունը կազմում էր 500 կվտ, ապա 1973 թ. հանրապետության էլեկտրակայաններն արտադրեցին մոտ 3,8 մլրդ կիլովատ-ժամ էներգիա։ Մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրու-

թյամբ Տաջիկստանը նկատելիորեն առաջ է անցել կապիտալիստական այնպիսի երկրներից, ինչպիսիք են Իտալիան, Հունաստանը, Իսպանիան, Պորտուգալիան: Միայն Կայրակկումի «Ժողովուրդների բարեկամություն» հիդրոէլեկտրակայանը 70 անգամ ավելի շատ էներգիա է տալիս, քան Թուրքեստանի բոլոր էլեկտրակայանները 1913 թվականին:

Այժմ կառուցվում է Միջին Ասիայում խոշորագույն Նուրեկի հիդրոէլեկտրակայանը՝ 2 մլն 700 հազար կիլովատ հզորությամբ: Նրա առաջին երեք ագրեգատները արդեն արդյունաբերական շահագործման են հանձնվել: Նուրեկի ՀԷԿ-ը էներգետիկ կենտրոն կդառնա Հարավ-Տաջիկական արդյունաբերական կոմպլեքսի համար, որն ստեղծվում է ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներին համապատասխան: Այդ էլեկտրակայանը կառուցում են մեր Հայրենիքի ավելի քան 40 ազգությունների ներկայացուցիչներ: Մոսկվայի, Լենինգրադի, երկրի այլ քաղաքների մոտ 200 արդյունաբերական ձեռնարկություններ, շինարարական կազմակերպություններ և գիտահետազոտական հաստատություններ մասնակցում են Վախշի էներգետիկ հսկայի կառուցմանը: Մոտ ապագայում այդ նույն գետի վրա կսկսվի Ռագունի էլեկտրակայանի շինարարությունը՝ 3 մլն 600 հազար կվտ հզորությամբ:

Մեծ թռիչք է ապրել նաև գյուղատնտեսությունը: Գյուղի սոցիալիստական վերակառուցման պրոցեսը զուգակցվում էր ֆեոդալա-տոհմական կացութաձևի լիկվիդացման համար մղվող պայքարով: Լենինյան կոոպերատիվ պլանի իրականացման բնագավառում լրացուցիչ դժվարություններ էին ստեղծվում մեխանիզատորների և ագրոզոոտեխնիկական կադրերի բացակայության պատճառով: Նախնական շրջանում լայն տարածում ստացավ կոլտնտեսային շինարարության այնպիսի եղանակը, ինչպիսին է հողի համատեղ օգտագործման ընկերությունը: Կոլտնտեսությունների ամրապնդման հետ, տաջիկ ժողովուրդը ամենագործուն կերպով իր մասնակցությունը բերեց երկիրը սեփական բամբակով ապահովելու կարևորագույն խնդրի լուծմանը: Այդ նպատակով, միութենական կառավարության օգնությամբ, հանրապետությունում մեծ աշխատանքներ ծավալվեցին ոռոգման, Վախշի հովիտում նոր հողերի յուրացման ու բնակեցման, այդ հովիտը նրբաթել բամբակի արտադրության միութենական բազա դարձնելու համար:

Երկրորդ հնգամյակի վերջերին հանրապետությունում ավարտվեց գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը. դեհկանային տնտեսությունների մոտ 90 տոկոսն ընդգրկվել էր կոլտնտեսություններում, որոնք մշակում էին ցանքատարածությունների 98,3 տոկոսը: Ամբողջովին լիկվիդացվեց շահագործողների վերջին դասը՝ բայությունը: Կոլտնտեսային կարգերի հաղթանակը, գյուղատնտեսության մեջ սոցիալիստական արտադրահարաբերությունների հաստատումը ընդմիշտ վերջ դրեցին մարդու կողմից մարդու շահագործմանը, ամրապնդեցին բանվոր դասակարգի և կոլտնտեսային դեհկանության դաշինքը:

Անճանաչելիորեն փոխվել է այսօր Տաջիկստանի գյուղատնտեսության դեմքը: Այնտեղ, ուր անցյալում անկենդան անապատներ էին, այժմ ձգվում են բամբակենու պլանտացիաների և պտղատու այգիների օազիսները: Սովետական իշխանության տարիներին հանրապետության գլխավոր տնտեսական հարստության՝ բամբակի արտադրությունն աճել է գրեթե 45 անգամ: Գյուղում արմատապես փոխվել են ոչ միայն կյանքի ու աշխատանքի պայմանները, այլև իրենք՝ մարդիկ, նրանց սոցիալական կերպարը:

Հանրապետության գյուղատնտեսության մեջ մեծ է մեքենայական աշխատանքի բաժինը: Այժմ այստեղ աշխատում են մոտ 30 հազար տրակտոր, ավելի քան 15 հազար բեռնատար ավտոմեքենա, 4,5 հազարից ավելի կոմբայն և տեխնիկայի այլ տեսակներ:

Տաջիկստանի էկոնոմիկայի բուռն զարգացումը ապահովեց հանրապետության աշխատավորների նյութական բարեկեցության, կուլտուրական ու կրթական մակարդակի բարձր աճը: Բանվորների ու ծառայողների տարեկան միջին թիվը անցյալ տարի հասավ 678 հազարի, 1922 թ. 16 հազարի դիմաց: Աճել են



բազմաթիվ ինժեներա-տեխնիկական կադրեր, ժամանակակից արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրության կազմակերպիչներ:

Նշանակալից փոփոխություններ են տեղի ունեցել հասարակության սոցիալական կառուցվածքում: Ծնվել են խոշոր արդյունաբերական կենտրոններ, քաղաքներ; բանվորական ավաններ: Քաղաքային բնակչությունը, 1913 թ. 9 տոկոսի դիմաց, 1972 թ. կազմում էր 38 տոկոս:

Տաջիկ ժողովրդին սքանչելի պտուղներ բերեց կուլտուրական հեղափոխությունը: Պետք է ասել, որ մեզ մոտ այն իրականացվում էր խիստ դժվարին պայմաններում. կյանքում ու կենցաղում դեռևս տիրապետող էին անցյալի հարաբերությունները, չկային բավականաչափ գրագետ կադրեր: Կուսակցությունն ու կառավարությունը այդ տարիներին Տաջիկստան աշխատանքի ուղարկեցին հարյուրավոր փորձված կուսակցական ու սովետական աշխատողներ, հազարավոր բարձրորակ մասնագետներ: Հենվելով այդ համակողմանի օգնության վրա, Տաջիկստանի կոմկուսի Կենտկոմն առաջին հերթին ուշադրությունը կենտրոնացրեց տարեց բնակչության շրջանում անգրագիտության վերացմանը և ժողովրդական կրթության զարգացմանը: 1938 թ. հանրապետության ազգաբնակչության գրագիտությունը արդեն կազմում էր 72 տոկոս: Մեծ առաջընթաց ապրեցին գիտությունը, կուլտուրան և գրականությունը: Եթե անցյալում հանրապետության տերիտորիայում կար ընդամենը մի քանի դպրոց (բարձրագույն կամ միջնակարգ մասնագիտական հաստատության մասին խոսք անգամ չէր կարող լինել), ապա այժմ Տաջիկստանում գործում են հազարավոր հանրակրթական դպրոցներ, 55 պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններ, 38 միջնակարգ մասնագիտական և 9 բարձրագույն ուսումնական հաստատություններ, որոնցում սովորողների թիվը հասնում է մեկ մլն 100 հազարի: Տաջիկստանի յուրաքանչյուր երրորդ բնակիչն այժմ սովորող է:

Մեր ժողովրդի պարծանքը Գիտությունների ակադեմիան է: Գիտահետազոտական հաստատություններում և բուհերի ամբիոններում արդյունավետ աշխատանք են կատարում մոտ վեց հազար գիտական ու մանկավարժական կադրեր, որոնցից ավելի քան 1.800-ը գիտության դոկտորներ ու թեկնածուներ են:

Կուլտուրական շինարարության խնդիրների լուծման բնագավառում մեծ է կուլտուր-լուսավորական հաստատությունների, գրականության և մամուլի դերը: Մենք ունենք 11 պրոֆեսիոնալ թատրոն, որտեղ բեմականացվում են սովետական ու դասական դրամատուրգիայի լավագույն գործերը, հանդես են գալիս փառաբանված արտիստներ, ինչպես, օրինակ, բալետի մենապարուհի, ՍՍՀՄ ժողովրդական արտիստուհի Մալիկա Սաբիրովան, որի արվեստին ծանոթ են ոչ միայն մեր երկրի, այլև արտասահմանի միլիոնավոր արվեստասերներ: Հանրապետությունում գործում են ավելի քան 1.200 գրադարաններ, հինգ թանգարան, 2000-ից ավելի ակումբներ:

Տաջիկական սովետական գրականության հռչակը վաղուց դուրս է եկել մեր հանրապետության սահմաններից: Ամբողջ աշխարհին հայտնի են Սադրիդդին Այնիի և Աբուլկասիմ Լախուտիի սքանչելի ստեղծագործությունները: Մեծ ժողովրդականություն են վայելում Տաջիկստանի ժողովրդական պոետ, Լենինյան մրցանակի դափնեկիր, սոցիալիստական աշխատանքի հերոս Միրզո Թուրսուն-Զադեի, ժողովրդական պոետ, պետական մրցանակի դափնեկիր Միրսաիդ Միրշակարի և այլոց անունները: Միութենական ասպարեզ են դուրս եկել մեր կինեմատոգրաֆիստների, կոմպոզիտորների, նկարիչների շատ ստեղծագործություններ: Սովետական իշխանության տարիներին ձևավորվեց սովետական մտավորականության ստվար բանակը, որն ակտիվորեն մասնակցում է մեր երկրում կոմունիզմի կառուցմանը:

Հանրապետությունն ունի ժողովրդական առողջապահության զարգացած սիստեմ: Այժմ այն միավորում է 1600-ից ավելի բուժական հիմնարկություններ, որոնց մեջ ընդգրկված են մոտ 23 հազար բուժաշխատողներ:

Սոցիալիստական վերափոխումների կարևորագույն արդյունքներից են բնակչության կենցաղում ու սովորույթներում կատարված փոփոխությունները: Բոլորովին այլ են հիմա շենքերի ճարտարապետությունն ու բնակարանների

կահավորանքը։ Կավաշեն ու դետնափոր խրճիթների փոխարեն վեր են բարձրացել բարեկարգ շենքեր։ Տաջիկ ընտանիքի բնակարանում այժմ ոչ միայն ժամանակակից կահույք կա, այլև հեռուստացույց, հեռախոս և այլն։

Սովետական ժողովրդի եղբայրական ընտանիքում աշխատավորների գիտակցության մեջ իսկական հեղաշրջում է տեղի ունեցել։ Տաջիկստանում ապրող տարբեր ազգությունների մարդկանց նոր հարաբերությունները ժողովուրդների եղբայրության ու ինտերնացիոնալիզմի կենսահաստատ ուժի իսկական արտահայտությունն են։ Ինչպես Լ. Ի. Բրեժնևը նշեց, կուսակցությունը հասավ այն բանին, որ ինտերնացիոնալիզմը մի բուռ կոմունիստների իդեալից վերածվեց բոլոր ազգերի և ազգությունների, սովետական միլիոնավոր ու միլիոնավոր մարդկանց խոր համոզմունքի ու վարքագծի։

Հասարակության նյութական և հոգևոր զարգացման բնագավառում հանրապետության աշխատավորների ձեռք բերած ակնառու նվաճումները, ՍՍՀՄ-ում կոմունիստական հասարակարգի կառուցման համար մղվող պայքարում նրանց ծանրակշիռ ավանդն արժանացել է ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական պետության ամենաբարձր գնահատականին։ Տաջիկական ՍՍՀ-ն պարգևատրվել է Լենինի և Ժողովուրդների բարեկամության շքանշաններով։

Խոսելով Միջին Ասիայի ժողովուրդների կյանքում սովետական իշխանության տարիներին կատարված վիթխարի վերափոխումների մասին, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի առթիվ զեկուցման մեջ ասաց. «Կապիտալիստական աշխարհում շատ ավելի համեստ նվաճումները հաճախ անվանում են «հրաշք»։ Բայց նրանում, ինչ տեղի է ունեցել սովետական Միջին Ասիայում, Սովետական Ղազախստանում, մենք, կոմունիստներս, ոչ մի գերբնական բան չենք տեսնում։ Դա այսպես ասած բնական հրաշք է, բնական՝ սովետական իշխանության համար, սոցիալիզմի համար, ժողովուրդների բարեկամության և եղբայրության այն հարաբերությունների համար, որոնք հաստատվել են մեր երկրում (Լենինյան կուրսով, հ. 4, էջ 72)։

Տաջիկստանի աշխատավորները մեծ հաջողությունների են հասել հատկապես ընթացիկ հնգամյակի առաջադրանքների կատարման ասպարեզում։ Անցած երեք ու կես տարում նոր վերելք են ապրել հանրապետության էկոնոմիկան, գիտությունն ու կուլտուրան։ Մինչև հնգամյակի վերջը արդյունաբերական արտադրանքի թողարկումը ավելանալու է 37—40 տոկոսով, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 2,1, պարարտանյութերինը՝ 1,5, բամբակե գործվածքեղենինը՝ 1,3 անգամ։

Մեծ խնդիրներ են դրված նաև գյուղատնտեսության աշխատողների առջև։ Գյուղատնտեսական մթերքների արտադրության տարեկան միջին աճը, ութերորդ հնգամյակի համեմատությամբ, կկազմի 28 տոկոս։

Սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ճանապարհին մեր հանրապետության աշխատավորների ձեռք բերած հաղթանակներն անխզելիորեն կապված են նրանց մարտական ավանգարդի՝ Տաջիկստանի կոմունիստական կուսակցության գործունեության հետ։ Այն դեպի իր հիսնամյա հոբելյանն է գնում կազմակերպչորեն ամրապնդված, գաղափարապես կոփված։ Տաջիկստանի կոմունիստների 90 հազարանոց ջոկատը, Սովետական Միության կոմունիստական կուսակցության միաձույլ շարքերում, հաջողությամբ գլխավորում է նոր հասարակարգի կառուցման համար հանրապետության աշխատավորների հերոսական պայքարը։

Ղեկավարվելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներով, Տաջիկստանի կոմունիստական կուսակցությունը հանրապետության աշխատավորներին մոբիլիզացնում է հնգամյակի չորրորդ՝ որոշիչ տարվա առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար։ Ոգևորված սովետական ժողովրդի պատմական հաղթանակներով, Տաջիկստանի աշխատավորները դեպի իրենց հանրապետության և Տաջիկստանի կոմկուսի 50-ամյա հոբելյանն են գնում կոմունիստական հասարակարգի կառուցման ասպարեզում նոր նվաճումների հասնելու վճռականությամբ։



# ՓԱՌԱՊԱՆԾ ՀԻՄՆԱՄՅԱԿ

Օ. Ն. ՕՐԱԶՄՈՒՀԱՄԵԴՈՎ
Թուրքմենական ՍՍՀ Մինիստրների սովետի նախագահ

Մեր ամբողջ երկիրը հանդիսավորությամբ նշում է Սովետական Միջին Ասիայի սոցիալիստական հանրապետությունների կազմավորման 50-ամյակը։ Ուզբեկստանի, Տաջիկստանի և Կիրգիզիայի եղբայրական ժողովուրդների հետ մեկտեղ իր պատմության այդ նշանակալից տարեթիվը նշում է նաև թուրքմեն ժողովուրդը։

Թուրքմենական Սովետական Սոցիալիստական Հանրապետության աշխատավորները, Սովետական Միության կոմունիստական կուսակցության և նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի ղեկավարությամբ, 50 տարիների ընթացքում գործած սխրանքներով, պայծառ ապագայի նկատմամբ վստահությամբ լի, ջանք չեն խնայում ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումների, իններորդ հնգամյակի որոշիչ տարվա պլանների կենսագործման համար, դրանով իսկ, աշխատանքային նորանոր հաջողություններով ըստ արժանվույն դիմավորելու իրենց հանրապետության կազմավորման և Թուրքմենստանի կոմունիստական կուսակցության հիմնադրման 50-ամյա հոբելյանը։

Ի բարօրություն սովետների մեր մեծ երկրի, հանուն կոմունիստական հասարակության կառուցման, թուրքմեն ժողովրդի կատարած անձնուրաց աշխատանքի ոգեշնչման աղբյուրը ոչ միայն այն է, որ կես դար առաջ հնարավորություններ ստեղծվեցին իրականացնելու նրանց իղձերն ու երազանքները ազատ ու երջանիկ կյանքի մասին, այլև այն, որ պատմականորեն կարճ ժամանակում այդ տենչերն ու ձգտումները մարմնավորվեցին կյանքում։

Այսօր իրականություն է դարձել ցարական Ռուսաստանի ժողովուրդների, ինչպես և թուրքմենների լավագույն մտածողների դարավոր երազանքը։ Անցյալի գիրկն են անցել թշվառությունը, անկուլտուրականությունը և հանապազօրյա հաց ճարելու հոգսը։ Կոմունիստների լենինյան կուսակցության ղեկավարությամբ մեր ժողովուրդն այնպիսի բարձունքներ է նվաճել տնտեսական ու կուլտուրական զարգացման ասպարեզում, որոնց մասին կապիտալիստական աշխարհի ժողովուրդները երազել իսկ չեն կարող։

Որպես հավասարը հավասարների մեջ, օգտվելով տեխնիկական առաջադիմության ու առաջավոր կուլտուրայի բոլոր բարիքներից, թուրքմեն ժողովուրդը, սովետական պետության բոլոր ժողովուրդների միասնական, բարեկամական ընտանիքում ապրում է երջանիկ, ապահով ու կուլտուրական կյանքով, իր ողջ ուժերն ու միտքը նվիրաբերելով կոմունիստական շինարարության գործին։

Բայց չէ՞ որ ընդամենը կես դարից մի փոքր ավելի առաջ թուրքմենները ոչ միայն չունեին իրենց պետականությունը, այլև գտնվում էին կիսագաղութային կախման մեջ, դաժանորեն շահագործվում էին ցարական չինովնիկների, տեղական ֆեոդալների ու հոգևորականության կողմից, քարշ տալով իրենց կիսաքաղց գոյությունը։

Թուրքմեն ժողովրդի, ինչպես և երկրի մյուս ժողովուրդների կյանքում շրջադարձային կետ հանդիսացավ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որը վերջ տվեց սոցիալական ու ազգային ճնշմանը և առաջին անգամ լայն հնարավորություններ ստեղծեց ժողովուրդների բազմակողմանի զարգացման համար։ Ազատագրված և իրավահավասար ժողովուրդները կանգնեցին սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ուղու վրա։

Հետհոկտեմբերյան առաջին տարիներին կուսակցությունը, Վ. Ի. Լենինի գլխավորությամբ, վիթխարի աշխատանք ծավալեց ժողովուրդների միջև նոր, սոցիալիստական հարաբերությունների՝ վստահության, բարեկամության, համագործակցության, եղբայրական փոխօգնության ձևավորման բնագավառում։

Մեր երկրի բոլոր ժողովուրդների, այդ թվում և թուրքմեն ժողովրդի պատմական ճակատագրի համար բացառիկ կարևոր նշանակություն ունեցավ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորումը 1922 թվականի դեկտեմբերին, որը բարենպաստ պայմաններ ստեղծեց ազգային-պետական շինարարության և անցյալից ժառանգած տնտեսական ու կուլտուրական հետամնացության վերացման համար։

«ՍՍՀՄ կազմավորումը նշանավորեց նոր փուլ ազգային ծայրամասերի զարգացման համար,— ասել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի մասին զեկուցման մեջ։— Նրանց ցույց տրվող օգնությունը հետևողական և բազմակողմանի կուրս ընդունեց համամիութենական տնտեսական քաղաքականության մեջ»։

1920 թվականին եղբայրական ժողովուրդների և, առաջին հերթին, ռուս մեծ ժողովրդի օգնությամբ թուրքմենական հողից վռնդվեցին անգլիական ինտերվենտները, տապալվեց խաների, մենշևիկների և տեղական ֆեոդալների իշխանությունը։ Թուրքեստանի ԻՍՍՀ կազմում իր պետականությունը գտավ նաև թուրքմեն ժողովուրդը, որի մի զգալի մասն ապրում էր նախկին Անդրկասպյան մարզում և վերակազմավորված Թուրքմենական մարզում։

Նույն թվականին Միջին Ասիայի տերիտորիայում ընկավ ֆեոդալիզմի վերջին հենարանը՝ Բուխարայի էմիրությունը և Խիվայի խանությունը, որտեղ շատ թուրքմեններ էին ապրում. այդպիսով պայմաններ ստեղծվեցին մեկ միասնական պետության մեջ նրանց միավորման համար։

Լենինյան ազգային քաղաքականության հետևողական կենսագործման շնորհիվ Միջին Ասիայի ժողովուրդները, ամբողջ երկրի եղբայրական ժողովուրդների օգնությամբ, սովետական իշխանության առաջին իսկ տարիներին նշանակալի հաջողությունների հասան էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման, ազգային կադրերի պատրաստման ասպարեզում։

Հաշվի առնելով այդ ամենը, 1924 թ. հունիսի 12-ին ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոն ընդունեց «Միջին Ասիայի հանրապետությունների սահմանազատման մասին» պատմական որոշումը, որը բխում էր ազգային հարցի մասին Վ. Ի. Լենինի մշակած մարքսիստական տեսության հիմնական դրույթներից ու կուսակցության ծրագրից և արտահայտում ժողովրդական լայն մասսաների սրտաբուխ ձգտումը՝ միավորվելու սովետական ազգային հանրապետությունների մեծ ընտանիքում։ Սովետական ազգային հանրապետությունները ջերմորեն ողջունեցին կուսակցության որոշումը, որը համապատասխանում էր Միջին Ասիայի բոլոր աշխատավորների կենսական շահերին։

Համաժողովրդական քննարկումից հետո Թուրքեստանի Կենտգործկոմի III արտակարգ սեսիան, Համախորեզմական V և Համաբուխարական V կուրուլթայները 1924 թ. սեպտեմբերին որոշումներ ընդունեցին Միջին Ասիայում ազգային սահմանազատումներ կատարելու մասին, ընդմին՝ ընդգծելով նոր



կազմավորվող հանրապետությունները ՍՍՀ Միության կազմի մեջ մտցնելու անհրաժեշտությունը։

ՍՍՀՄ Կենտգործկոմի II սեսիան 1924 թ. հոկտեմբերի 27-ին, հավանություն տվեց Միջին Ասիայի հանրապետությունների գերագույն մարմինների որոշումներին և որոշում ընդունեց Թուրքմենական ՍՍՀ և Ուզբեկական ՍՍՀ կազմավորելու մասին։

Սովետների՝ 1925 թ. փետրվարին կայացած համաթուրքմենական I հիմնադիր համագումարը հանդիսավոր պայմաններում միահամուռ կերպով դեկլարացիա ընդունեց Թուրքմենական Սովետական Սոցիալիստական Հանրապետության կազմավորման մասին։ Արտահայտելով աշխատավորների կամքը, համագումարը հրապարակեց իր որոշումը— Թուրքմենական ՍՍՀ-ն կամովին մտնում է ՍՍՀՄ կազմի մեջ։ Սովետների համամիութենական III համագումարը 1925 թ. մայիսին գոհունակությամբ ողջունեց թուրքմեն ժողովրդի ազատ կամքի այդ արտահայտությունը և Թուրքմենական ՍՍՀ-ն ընդունեց ՍՍՀ Միության կազմի մեջ՝ որպես իրավահավասար անդամ։

1925 թ. փետրվարին կայացավ Թուրքմենստանի կոմունիստական կուսակցության I համագումարը, որը կազմակերպչորեն ավարտեց Սովետական Միության բազմամիլիոն կոմունիստական կուսակցության մարտական ջոկատներից մեկի՝ Թուրքմենստանի կոմունիստական կուսակցության ձևավորումը։

Թուրքմենական ՍՍՀ-ի կազմավորումը և Թուրքմենստանի կոմունիստական կուսակցության ստեղծումը պատմական խոշորագույն իրադարձություն էին թուրքմեն ժողովրդի կյանքում. իր բազմադարյա պատմության մեջ նա առաջին անգամ ձեռք բերեց ազգային պետականություն և, ղեկավարվելով սոցիալական ու ազգային հավասարության սկզբունքով, իրավունք ստացավ սովետական աշխատավորական պետություն կերտելու։

Հանրապետության աշխատավորների առջև ծառացավ տնտեսական և կուլտուրական հետամնացության հաղթահարման, ֆեոդալական-նահապետական կացութաձևից անմիջականորեն սոցիալիստական կացութաձևին անցնելու խնդիրը։

Վիթխարի մի խնդիր էր այդ, որովհետև, չնայած զգալի բնական ռեսուրսների առկայությանը և բարենպաստ կլիմայական պայմաններին, Թուրքմենստանն այն ժամանակ ագրարային, մանր-գյուղացիական հետամնաց երկիր էր։ Նախահեղափոխական Թուրքմենստանում հիմնականում կային գյուղատնտեսական հումք վերամշակող մանր արդյունաբերական փոքրաթիվ, կիսատնայնագործական ձեռնարկություններ՝ պրիմիտիվ տեխնիկայով։ 1925 թ. արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը կազմում էր 27,9, իսկ գյուղատնտեսության արտադրանքինը՝ 72,1 տոկոս։

Անմխիթար էր և գյուղատնտեսության վիճակը։ Հողատարածությունների և ջրի պաշարների մեծ մասը բեկերի, հոգևորականության, ցարական աստիճանավորների ձեռքում էր, մինչդեռ շատ դեյխաններ հողազուրկ էին։ Գյուղացիական տնտեսության մեջ աշխատանքի հիմնական գործիքներն էին քլունգը, բահն ու թակուչակը։ Հողագործության ագրոտեխնիկական ցածր մակարդակը, ոռոգելի ջրի պակասը գյուղատնտեսական կուլտուրաների ցածր բերքի, մթերքների սակավ արտադրության պատճառն էին։

Այդ ամենի հետ մեկտեղ, քաղաքացիական պատերազմի տարիներին զգալիորեն քայքայվել էր երկրի էկոնոմիկան։ Ավերվել, չէին գործում եղած արդյունաբերական ձեռնարկությունները։ 1913 թվականի համեմատությամբ, 1925 թվականին ոռոգելի ցանքատարածությունները կրճատվել էին 18 տոկոսով։ Զգալիորեն պակասել էր հացահատիկի, տեխնիկական, բոստանա-բանջարանոցային և այլ կուլտուրաների արտադրությունը։

Անգրագիտության, խավարամոլության և անկուլտուրականության երկիր էր նախահեղափոխական Թուրքմենիան, ուր չկար բարձրագույն կամ միջնակարգ մասնագիտական ուսումնական ոչ մի հաստատություն։ 1914—1915 թվականներին կային միայն հանրակրթական 58 դպրոցներ, ուր սովորում էին բեկերի, ցարական չինովնիկների մոտ 7 հազար երեխաներ։ Չկար ոչ մի մասսայական գրադարան, ոչ մի թատրոն։ Գաղութային ռեժիմի, աշխատավորների

դաժան շահագործման հետևանքն էին թշվառությունը, խավարն ու անկուլտուրականությունը, որ պատճառ էին դառնում սոցիալական շատ հիվանդությունների, որոնց դեմ կազմակերպված պայքար չէր մղվում։ 1913 թվականին Թուրքմենիայում կար միայն 70 բժիշկ. գործում էին ընդամենը 13 հիվանդանոց՝ 277 մահճակալներով։ Չկային կանանց, մանկական կոնսուլտացիաներ, նախադպրոցական հաստատություններ։

Հանրապետությունը չուներ իր ազգային բանվոր դասակարգը, ինժեներա-տեխնիկական անձնակազմ և ժողովրդական տնտեսության այլ ճյուղերի մասնագետներ։

Այդպիսին էր վիճակը Թուրքմենիայում, և ազատություն ու սեփական պետականություն ձեռք բերած թուրքմեն ժողովուրդը այստեղից պետք է սկսեր նոր կյանքի կառուցումը։ Ամենայն անկեղծությամբ ասենք, որ թուրքմեն ժողովուրդը չէր կարողանա լուծել այդ կարևոր պատմական խնդիրը առանց Սովետական Միության եղբայրական ժողովուրդների և, առաջին հերթին՝ ռուս մեծ ժողովրդի համակողմանի եղբայրական օգնության։

Իր անկախ պետական գոյության առաջին իսկ օրերից Թուրքմենական ՍՍՀ-ն և այնտեղ բնակվող ժողովուրդները իրենց բարգավաճման գործում զգում են կոմունիստական կուսակցության լենինյան Կենտրոնական կոմիտեի և սովետական կառավարության, Սովետական Միության բոլոր ժողովուրդների ամենօրյա հոգատարությունն ու անշահախնդիր օգնությունը։

Սոցիալիստական շինարարության լենինյան պլանի կարևորագույն օղակը ինդուստրացումն է։ Թուրքմենստանում այն կենսագործվում է համամիութենական խնդիրների և տեղական առանձնահատկությունների հաշվառմամբ՝ երկրի բոլոր ժողովուրդների եղբայրական օգնությամբ ու համագործակցությամբ։ Արդյունաբերական նոր ձեռնարկություններ կառուցելիս, հները վերակառուցելիս մեզ օգնել են Ռուսաստանի Ֆեդերացիայի, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Վրաստանի, Հայաստանի և եղբայրական մյուս հանրապետությունների էներգետիկները, մետաղագործները, մեքենաշինարարները, քիմիկոսներն ու տեքստիլագործները. Նրանցից մենք ստացել ենք նաև մեքենաներ, հաստոցներ, մետաղ։ Կադրերով ու անհրաժեշտ սարքավորմամբ զգալի օգնություն են ցույց տվել մեզ եղբայրական Ադրբեջանի նավթագործները՝ մեր նավթահանության արդյունաբերությունը ժամանակակից հիմքի վրա դնելու գործում։ Այդ ամենի շնորհիվ արդեն երկրորդ հնգամյակի վերջին Թուրքմենական ՍՍՀ-ն դարձավ ինդուստրիալ-ագրարային հանրապետություն, որի արդյունաբերական արտադրության բաժինը ժողովրդական տնտեսության արտադրանքում հասավ 68,9 տոկոսի։ Սոցիալիստական ինդուստրացումը թուրքմեն ժողովրդի համար ունեցավ ոչ միայն տնտեսական նշանակություն, այլև հանգեցրեց սոցիալական կարևորագույն արդյունքների. ստեղծվեց համախմբվող թուրքմենական սոցիալիստական ազգի միջուկը՝ ազգային բանվոր դասակարգը։

Թուրքմենստանում, ինչպես և ողջ երկրում, լենինյան կոոպերատիվ պլանի հիման վրա գյուղատնտեսությունը ևս սկսեց ընթանալ սոցիալիստական վերակառուցման ուղիով։ Չնայած շահագործողական դասակարգերի մնացուկների կատաղի դիմադրությանը, հանրապետությունում կոլեկտիվացումն իրագործվեց հիմնականում նույն ժամկետներում, ինչ որ ողջ երկրում։

Գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման շնորհիվ շեշտակի վերելք ապրեց գյուղատնտեսական արտադրությունը։ Մեր հանրապետությունն արժանի ավանդ ներդրեց տնտեսական-քաղաքական կարևոր մի խնդրի լուծման— բամբակի հարցում կապիտալիստական երկրներից ՍՍՀՄ-ի անկախության նվաճման մարզում։

Մեզ մոտ կուլտուրական հեղափոխությունը ևս իրականացվեց դժվարին պայմաններում։ Խիստ զգալի էր ուսուցչական ու դասախոսական ազգային կադրերի պակասը։ Այդ կարևոր գործին արգելակում, խոչընդոտում էին և շահագործող դասակարգերի վերապրուկները, բնակչության կրոնական ու այլ նախապաշարմունքները։ Թուրքմենստանի կոմունիստական կուսակցու-



թյան ղեկավարությամբ, երկրի եղբայրական ժողովուրդների օգնությամբ հաղթահարվեցին և այս դժվարությունները։

30-ական թվականների կեսերին հիմնականում վերացվեցին բնակչության անգրագիտությունն ու կուլտուրական հետամնացությունը, սոցիալական շատ հիվանդություններ, ստեղծվեց հանրակրթական դպրոցների և մասնագիտական ուսումնական հաստատությունների, կուլտուր-լուսավորական և բժշկական հիմնարկությունների լայն ցանց։

Կուլտուրական հեղափոխության ընթացքում կազմավորվեց կուսակցության և սովետական իշխանության շուրջ համախմբված ազգային մտավորականությունը։

Ստեղծվեց ազգային թատրոն, զարգացան կերպարվեստը, երաժշտությունը, թուրքմենական գրականությունը հարստացավ նոր ժանրերով, գոյացավ սովետական թուրքմենական բանաստեղծների, արձակագիրների, կոմպոզիտորների, նկարիչների, քանդակագործների մի մեծ համաստեղություն։

Մեծ աշխատանք է կատարվել թուրքմենուհիների ազատագրման ասպարեզում։ Անցյալի լրիվ իրավազուրկ, անտեսված և անգրագետ, ղալիմով վաճառվող թուրքմենուհին պատվավոր տեղ է գրավել արտադրության մեջ, պետական ու հասարակական մարմիններում, գիտության, արվեստի, կուլտուրայի, առողջապահության, տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր ասպարեզներում։

Սոցիալիստական ինդուստրացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման ու կուլտուրական հեղափոխության կենսագործումը վկայում է, որ 30-ական թվականների կեսերին Թուրքմենստանում, ինչպես և մեր ողջ երկրում, սոցիալիզմը հիմնականում կառուցված էր։

Թուրքմենական ՍՍՀ-ի, ինչպես և սովետական արևելքի մյուս հանրապետությունների փորձն ապացուցեց, որ ավելի զարգացած երկրներում պետական իշխանությունը գրաված պրոլետարիատի և նրա ավանգարդի՝ կոմունիստական կուսակցության օգնությամբ, հնարավոր է հետամնաց երկրների անցումը սոցիալիզմին՝ շրջանցելով զարգացման կապիտալիստական ստադիան։

Սոցիալիզմի կառուցումը արմատական փոփոխություն հարուցեց հասարակության դասակարգային կառուցվածքում։ Հակամարտ դասակարգերին փոխարինեցին բանվորների ու գյուղացիների բարեկամական դասակարգերը, որոնք աշխատավորական մտավորականության հետ միասին կազմում են թուրքմենների սոցիալիստական ազգը, ազգի անկապտելի հատկությունները դարձան՝ բարոյա-քաղաքական միասնությունը, համախմբվածությունը կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության շուրջը, սովետական հայրենասիրությունը։

Այդ հիանալի հատկություններն առանձնապես վառ դրսևորվեցին Հայրենական մեծ պատերազմի ծանր տարիներին։ Թուրքմենստանցի տասնյակ հազարավոր մարտիկներ, իրենց կյանքը չխնայելով, սովետական երկրի բոլոր ժողովուրդների հետ կողք-կողքի, անձնվիրաբար մարտնչում էին մեր սոցիալիստական հայրենիքի ազատության ու անկախության համար։ Սովետական Թուրքմենստանի հազարավոր զավակներ պարգևատրվեցին ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով, իսկ 70 մարտիկների շնորհվեց Սովետական Միության հերոսի բարձր կոչում։ Հայրենիքի ազատության ու անկախության համար մարտադաշտերում թափված արյունը հավիտյանս ամրապնդեց մեր երկրի ժողովուրդների անքակտելի բարեկամությունը։

Հետպատերազմյան տարիներին, կոմունիստական կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի ղեկավարությամբ, Սովետական Միության ժողովուրդների եղբայրական ընտանիքում Թուրքմենստանի աշխատավորները վիթխարի հաջողությունների են հասել էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման գործում։ Թուրքմենական ՍՍՀ-ն այսօր առաջավոր սոցիալիստական հանրապետություն է՝ զարգացած բազմաճյուղ արդյունաբերությամբ, մեքենայաց-

ված խոշոր գյուղատնտեսությամբ, բարձր կուլտուրայով։ Նա սոցիալիզմի վառ փարոսներից մեկն է Արևելքում։

Զարգացած սոցիալիստական հասարակության պայմաններում բացառիկ արագ տեմպերով է առաջադիմում հանրապետության արդյունաբերությունը, որն այժմ ունի 80 արդիական ճյուղ։ Թուրքմենստանի ինդուստրիալ բնույթը որոշում են էներգետիկան, քիմիական, նավթի, նավթավերամշակման, գազի, թեթև, սննդի, շինանյութերի և այլ ճյուղերի արդյունաբերությունը։ Հանրապետության թողարկած արտադրանքի ծավալը 50 տարում աճել է ավելի քան 130 անգամ։ Ներկայումս Թուրքմենական ՍՍՀ-ում մեկ օրվա ընթացքում 7 անգամ ավելի նավթ է արդյունահանվում, քան ամբողջ 1924 թվականին՝ հանրապետության կազմավորման տարում։ Մեր հանրապետությունը գազ է մատակարարում երկրի կենտրոնական շրջաններին։ Վիթխարի փոփոխություններ են տեղի ունեցել նաև Թուրքմենստանի գյուղատնտեսության մեջ։ Այն ունի միանգամայն նոր նյութատեխնիկական բազա, հենվում է գիտության ու առաջավոր փորձի նորագույն նվաճումների վրա։ Իրականացվում է ոռոգման շինարարական աշխատանքների մեծ ծրագիր։ Սովետական իշխանության տարիներին կառուցվել են տասնյակ խոշոր ջրատար մայրուղիներ, մի քանի ջրամբարներ, հազարավոր կիլոմետրերով ոռոգիչ փոքր ջրանցքների ցանց։ Լայնորեն ծավալվել են հողաբարելավման աշխատանքները։ Կառուցված են խոշոր ջրամբարներ և ջրամբարիչ-ցամաքեցնող ցանց, որը ոռոգելի հողերն ազատում է աղակալումից։ Հիդրոտեխնիկական ամենավիթխարի կառույցը Կարակումի՝ Վ. Ի. Լենինի անվան ջրանցքն է 850 կիլոմետր երկարությամբ։ Այն մարդու ձեռքով ստեղծված ամենամեծ արհեստական ջրատարներից մեկն է աշխարհում։ «Կյանքի գետ» է կոչում մեր ժողովուրդը ջրանցքը. և այդ գետը կառուցել են 36 ազգությունների ներկայացուցիչներ։ Ջրանցքը կառուցելիս գործադրվել է Սովետական Միության գրեթե բոլոր հանրապետություններում պատրաստված տեխնիկան։ Այդպիսի հզվագյուտ կառույցը մեր անծայրածիր երկրի ժողովուրդների մեծ, անխախտելի բարեկամության մարմնավորման ցայտուն վկայությունն է։

Թուրքմենստանի գյուղատնտեսության արմատական վերակառուցումն իր պտուղներն է տալիս։ Ոռոգելի հողատարածությունները հասել են մինչև 744 հազար հեկտարի կամ, 1925 թվականի ողջ ցանքատարածության համեմատությամբ, ավելացել 3 անգամ։

Գյուղատնտեսության համախառն արտադրանքը, 1913 թ. համեմատությամբ, ավելացել է 5,5 անգամ և 1973 թ. կազմել մոտ 780 միլիոն ռուբլի։ Հատկապես արդյունավետ է զարգանում բամբակագործությունը։ Բամբակը Սովետական Թուրքմենստանի հպարտությունն է։ 1922 թ. համեմատությամբ բամբակենու զբաղեցրած տարածությունն աճել է ավելի քան 16 անգամ, բազմապատկվել են տեխնիկական այդ արժեքավոր կուլտուրայի բերքատվությունն ու համախառն բերքը։ 1973 թ. հանրապետության բամբակագործները բամբակի մշակության ամբողջ պատմության մեջ առաջին անգամ հայրենիքին տվեցին 1 միլիոն տոննա բամբակի հումք, պլանը գերակատարելով ավելի քան 167 հազար տոննայով։

Անհամեմատ բարձրացել է թուրքմեն ժողովրդի բարեկեցությունը։ Նրանց, ինչպես և մեր մեծ երկրի մյուս ժողովուրդներին մատչելի են աշխատավորների ջանքերով ստեղծված բոլոր նյութական բարիքները, նրանք վստահ են, որ վաղն ավելի պայծառ է լինելու, քանի որ սոցիալիստական հասարակարգն ապահովում է աշխատավորների կենսամակարդակի անշեղ վերելքը։

Բերենք հանրապետության բնակչության բարեկեցության վերելքն արտացոլող մի քանի փաստեր։ Թուրքմենական ՍՍՀ ազգային եկամուտը, որի երկու երրորդը բաժին է ընկնում ժողովրդական սպառմանը, վերջին 15 տարում ավելի քան կրկնապատկվել է։ 1965 թվականի համեմատությամբ բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտներն ավելացել են 54 տոկոսով, իսկ հասարակական սպառման ֆոնդը՝ 1960 թ. համեմատությամբ, եռապատկվել է։

Հանրապետությունում հետզհետե ավելի մեծ թափով է ծավալվում բնակարանային շինարարությունը։ Միայն 1950-ից մինչև 1973 թ. հանրապետության աշխատավորների ավելի քան երեք քառորդը բարելավել է իր բնակարանային պայմանները։ Առավել բարեկարգ են դառնում մեր քաղաքներն ու գյուղերը, բնակչության կենցաղի մեջ են մտել էլեկտրականությունը, գազը, ջրմուղը, կոյուղին, կենտրոնական ջեռուցումը։ Կենցաղսպասարկումը բարելավելու համար առանձնապես շատ բան է արվել վերջին տարիներս։



Ժողովրդի բարեկեցության մասին կուսակցության հոգատարության վառ արտահայտությունն է բնակչության բուժսպասարկման արմատական բարելավումը։ Հանրապետությունն ունի հիվանդանոցների, պոլիկլինիկաների, ծննդատների, բուժ-մանկաբարձական կետերի, կանանց և մանկական կոնսուլտացիաների խիտ ցանց։ Ներկայումս Թուրքմենստանում աշխատում են 5.300 բժիշկներ, 17 հազար միջին բուժաշխատողներ։ Բնակչությունն ազատվել է սոցիալական այնպիսի հիվանդություններից, ինչպես տրախոման, գոնջությունը, մալարիան, կրճատվել է և մանկական մահացությունը, մարդիկ դարձել են ավելի երկարակյաց։

Ժողովրդական կրթությունը Թուրքմենական ՍՍՀ-ում, ինչպես և ամբողջ սովետական երկրում, դարձել է այնքան մասսայական ու որակյալ, որ անհասելի է նույնիսկ բարձր զարգացած կապիտալիստական երկրների համար։ Այն այժմ մատչելի է, իսկական ժողովրդական և պարտադիր բոլորի համար։ Հանրապետության բնակչության գրեթե կեսն ունի բարձրագույն և միջնակարգ կրթություն։

Հանրակրթական դպրոցներում և պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում այժմ սովորում են 635 հազար մարդ։ 6 բուհերում և 29 միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում ուսանում են մոտ 50 հազար հոգի. ողջ հանրապետությունում սովորում են 786 հազար մարդ, կամ ամբողջ բնակչության մոտ մեկ երրորդը։

Թուրքմենստանում սովետական իշխանության կարևորագույն նվաճումն է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի և կուլտուրական շինարարության համար որակյալ կադրերի հոծ բանակի ստեղծումը։ Այժմ հանրապետությունում աշխատում են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող ավելի քան 127 հազար մասնագետներ, գրեթե տասն անգամ ավելի, քան 1940 թվականին։

Բուռն զարգանում է գիտությունը։ Թուրքմենական գիտությունների ակադեմիայի գլխավորությամբ գիտահետազոտական 60 հաստատություններում զբաղված են ավելի քան 4 հազար գիտաշխատողներ, որոնցից 1.570-ը գիտության դոկտորներ ու թեկնածուներ են։

Աննախընթաց են փոփոխությունները թուրքմեն ժողովրդի հոգևոր կյանքում։ Հանրապետությունը ծածկվել է պրոֆեսիոնալ և ժողովրդական թատրոնների, կուլտուրայի պալատների, կինոթատրոնների, ակումբների և գրադարանների խիտ ցանցով։ Օպերային և դրամատիկական ազգային թատրոնների բեմահարթակներում տաղանդավոր կոլեկտիվները բեմադրում են թուրքմեն, ինչպես և ռուս, ուկրաինացի, ուզբեկ, հայ, ադրբեջանցի և այլ ազգերի դրամատուրգների ու կոմպոզիտորների ստեղծագործությունները։

Թուրքմեն կինեմատոգրաֆիստները պատմական և արդիական թեմաներով ստեղծել են շատ կինոֆիլմեր, որոնք ճանաչում են գտել սովետական ամբողջ ժողովրդի կողմից։

Այժմ մենք ունենք մեր սեփական, հիրավի ժողովրդական գրականությունը։ Մեր տաղանդավոր գրողների ու բանաստեղծների երկերը ռեալիստորեն արտացոլում են թուրքմեն ժողովրդի կյանքում սովետական իշխանության տարիներին տեղի ունեցած հիանալի փոփոխությունները, փառաբանում կոմունիզմ կառուցողներին, աշխատավորներին դաստիարակում ինտերնացիոնալիզմի, սովետական հայրենասիրության, կոմունիստական կուսակցության գործին նվիրվածության ոգով։

Ներկայումս Թուրքմենստանում հրատարակվում են 29 լրագիր՝ մոտ 816

հազար, 21 ամսագիր՝ 324 հազար տպաքանակով, ամեն տարի հրատարակվում են ինչպես թուրքմեն, նույնպես և եղբայրական միութենական հանրապետությունների ու արտասահմանյան երկրների գրողների բազմաթիվ գրքեր։

Թուրքմեն աշխատավորների հոգևոր կյանքին բնորոշ է ոչ թե ազգային սահմանափակությունը, այլ ինտերնացիոնալիզմը, հոգևոր արժեքների փոխանակումը, կուլտուրայի լայն փոխհաղորդակցությունը Սովետական Միության բոլոր հանրապետությունների և սոցիալիստական երկրների ժողովուրդների հետ։ Գնալով ընդլայնվում են մեր կուլտուրական կապերը Ասիայի ու Աֆրիկայի՝ ինքնուրույն ազգային զարգացման ուղին ընտրած երկրների հետ։

Թուրքմենական արվեստի ու գրականության գործիչների պատվիրակությունները հաճախ են լինում մեր հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում, միութենական հանրապետություններում, այդ թվում և Հայաստանում։ Մեր պատվիրակները եղբայրական ժողովուրդներին ծանոթացնում են թուրքմենական ազգային սոցիալիստական արվեստի ու գրականության նվաճումներին։

Մենք էլ բազմիցս ընդունել ենք Ռուսաստանյան Ֆեդերացիայի, Ուկրաինայի, Ուզբեկստանի, Հայաստանի, Ադրբեջանի և եղբայրական մյուս հանրապետությունների ներկայացուցիչներին. նրանք պատմում են իրենց նվաճումների, փորձի մասին, որն զգալիորեն նպաստում է թուրքմեն ժողովրդի հոգևոր կյանքի հարստացմանը։

Հանրապետության աշխատավորները երախտապարտ են մեր երկրի բոլոր ժողովուրդներին, բարձր են գնահատում նրանց ցուցաբերած օգնությունը ժողովրդական տնտեսության համար կադրերի պատրաստման գործում։ Մեր հանրապետության հազարավոր պատանիներ ու աղջիկներ կրթություն են ստանում Մոսկվայում, Կիևում, Տաշքենդում, Բաքվում և եղբայրական հանրապետությունների մյուս քաղաքների բուհերում։

Էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման ասպարեզում թուրքմեն ժողովրդի ձեռք բերած հաջողությունները լենինյան ազգային քաղաքականության, սովետական ժողովուրդների անսասան բարեկամության կենսական ուժի ցայտուն դրսևորումներից են։

Տնտեսական ու կուլտուրական շինարարության գործում ՍՍՀՄ ժողովուրդների փորձի փոխներգործությունն ու փոխհարստացումը սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների մերձեցման ընդհանուր պրոցեսի մի մասն է։

Համառոտակի այսպիսին է թուրքմեն ժողովրդի անցած ուղին Թուրքմենական ՍՍՀ-ի գոյության 50 տարիների ընթացքում, այսպիսին է նրա ավանդը մեր երկրում կոմունիզմի կառուցման համաժողովրդական գործում։

Հայրենիքը բարձր գնահատեց Թուրքմենական ՍՍՀ աշխատավորների ծառայությունները ՍՍՀ Միության զարգացման և ամրապնդման, մեր երկրի ժողովուրդների բարեկամության հաստատման մարզում, նրանց ավանդը սովետական պետության տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական զարգացման գործում։ Թուրքմենստանին շնորհվեցին Լենինի և Ժողովուրդների բարեկամության շքանշաններ։ Մարիի, Չարջոուի և Թաշաուզի մարզերը պարգևատրվել են Լենինի շքանշանով։ Հանրապետության 302 աշխատավորների շնորհվել է Սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում։ Տասնյակ հազարավոր մարդիկ պարգևատրվել են Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով։

Թուրքմենստանի աշխատավորները, հպարտ իրենց անձնուրաց աշխատանքի հիանալի արդյունքներով, երբեք չեն մոռանում, որ տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառներում աչքի ընկնող բոլոր հաղթանակները նվաճել են լենինյան կոմունիստական կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի իմաստուն ղեկավարության շնորհիվ։

Այդ հաղթանակներն արգասիք են սովետական ժողովուրդների համագործակցության ու եղբայրական փոխօգնության, ժողովուրդներ, որոնց տնտեսական ու կուլտուրական ընդհանրությունն առավել ակնհայտ է դառնում զարգացած սոցիալիստական հասարակության պայմաններում։

ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումների, իններորդ հնգամ-



յակի պլանների կատարման գործում, հանրապետության ժողովրդական տնտեսության և կուլտուրայի հետագա զարգացման բոլոր ձեռնարկումներում մեր ժողովրդին հարաճուն, անգնահատելի օգնություն են ցույց տալիս ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, սովետական կառավարությունը, մեր մեծ երկրի եղբայրական բոլոր ժողովուրդները։

Տարեցտարի ավելանում է միութենական հանրապետություններից Թուրքմենական ՍՍՀ առաքվող մետաղի, մեքենաների, զանազան արդյունաբերական սարքավորումների, պարարտանյութերի, անտառանյութերի, ժողովրդական սպառման ապրանքների հոսքը։

Անընդհատ աճում, ամրապնդվում են նաև Թուրքմենական ՍՍՀ և Հայկական ՍՍՀ տնտեսական և կուլտուրական կապերը։ Եղբայրական Հայաստանի աշխատավորներն առաքում են մեզ դարբնոցա-մամլակային սարքավորում, մետաղամշակման հաստոցներ, զանազան պոմպեր, արհեստական ալմաստից պատրաստված գործիքներ, մետաղահատ սարքերի պահեստամասեր, գյուղատնտեսական մեքենաների, ապրանքատար ու մարդատար ավտոմոբիլների դողեր, կարի ու տրիկոտաժի արտադրանքներ, ժամացույցներ և շատ այլ արտադրատեսակներ։

Իսկ մենք Հայաստան ենք ուղարկում խմոր հունցող մեքենաներ, ռադիոհաղորդիչներ, ջահեր, նատրիումի ծծմբատ, լվացող սինթետիկ միջոցներ, կաշվե հումք և այլն։

Թուրքմեն ժողովուրդը, ինչպես և եղբայրական մյուս ժողովուրդները, բազմամյա կենսափորձով համոզվել են, թե որքա՜ն արգասաբեր է նրանց համախմբումը Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ, թե ինչպիսի հեռանկարներ է բացում այն նրանց հետագա առավել զարգացման համար։

Ընթացիկ տարվա անցած ամիսների աշխատանքի արդյունքները վկայում են, որ Սովետական Թուրքմենստանի աշխատավորները պատվով կկատարեն կուսակցությանն ու սովետական կառավարությանը տված իրենց խոսքը։ Վստահությամբ կարող ենք ասել, որ հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների ու սովխոզների կոլեկտիվները, հանրապետության բոլոր աշխատավորները, կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ, արժանավայել կերպով, աշխատանքային նոր հաջողություններով կդիմավորեն թուրքմեն ժողովրդի կյանքի նշանավոր տարեթիվը՝ Թուրքմենական ՍՍՀ-ի կազմավորման և Թուրքմենստանի կոմունիստական կուսակցության հիմնադրման 50-ամյակը։

## ՀՈԴՎԱԾՆԵՐ

# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՎԵՐԸՆԹԱՑԸ

## (Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԵՐԻ ՈՒ ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ՉՈՐՐՈՐԴ ՀԱՏՈՐԻ ԼՈՒՅՍԸՆԾԱՅՄԱՆ ԱՌԹԻՎ)

«Հայաստան» հրատարակչությունը հայերեն լույս է ընծայել ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառերի, զեկուցումների և ելույթների չորրորդ հատորը[1]: Այն հրապարակի վրա եղած **Լենինյան կուրսով** ընդհանուր խորագիրը կրող երեք հատորների շարունակությունն է, ուր զետեղված են 1972—1974 թթ. ընթացքում Լ. Ի. Բրեժնևի ճառերն ու հոդվածները: Այսպիսով, **Լենինյան կուրսով** քառահատոր ժողովածուն ընդգրկում է 1964—1974 թթ., մի այնպիսի ժամանակահատված, երբ մեր երկրի հասարակական կյանքում կատարվեցին որակական խոր փոփոխություններ: Այդ տարիներին երկրում իրականացված տնտեսական ու քաղաքական խոշոր միջոցառումների շնորհիվ առաջընթաց մեծ քայլ արվեց կոմունիզմի կառուցման ճանապարհին, պարզորոշ դրսևորվեցին հասուն սոցիալիզմի իրական գծերը:

Չորրորդ հատորն արտացոլում է վերջին երկու տարում մեր երկրում և միջազգային ասպարեզում կատարված քաղաքական կարևորագույն իրադարձությունները: Դրանցից ամենանշանակալիցը ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի տոնակատարությունն էր: Սովետական բազմազգ պետության կեսդարյա փառապանծ հոբելյանը վերածվեց ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների եղբայրական անխախտ միասնության հզոր տոնի: ՍՍՀՄ 50-ամյա պատմությունը, ասում է Լ. Ի. Բրեժնևը, սովետական սոցիալիստական պետության շրջանակներում միավորված բոլոր ժողովուրդների անխախտ միասնության ու բարեկամության ստեղծման պատմությունն է: Դա սոցիալիստական հեղափոխությունից ծնված և այսօր աշխարհի ամենազորեղ տերություններից մեկը դարձած պետության աննախընթաց ու համակողմանի զարգացման պատմությունն է, նրա դրոշի ներքո համախմբված բոլոր հանրապետությունների, երկրում բնակվող բոլոր ազգերի ու ազգությունների առանձնացման և նրանց տնտեսական, քաղաքական ու կուլտուրական ծաղկման պատմությունը:

Գրքում զետեղված ճառերում ու ելույթներում խորապես վերլուծվում են կոմունիստական շինարարության արդի փուլի կարևորագույն պրոբլեմները: Համակողմանի բնութագրվում են կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի հոյակապ նվաճումները իններորդ հնգամյակում, քննարկվում ժողովրդական տնտեսության, աշխատավորների բարեկեցության բարձրացման, կուլտուրայի հետագա զարգացման, մեր հայրենիքի պաշտպանական հզորության ամրապնդման ուղիների ու մեթոդների վերաբերյալ սկզբունքային դրույթները:

[1] Լ. Ի. Բրեժնև. Լենինյան կուրսով. ճառեր և հոդվածներ, *Երևան, հ. 4, 1974։*



Լ. Ի. Բրեժնևի նոր գրքում մեծ տեղ է հատկացված ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական պետության միջազգային բազմակողմանի ու արդյունավետ գործունեությանը: Սովետական ժողովուրդը, աշխարհի առաջադեմ ողջ մարդկությունը ջերմորեն ու երախտագիտությամբ պաշտպանում են ՍՍՀՄ արտաքին քաղաքականությունը, ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած խաղաղության ծրագիրը, որի իրականացման գործում անձնական մեծ ներդրում ունի մեր կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը: Այդ երախտագիտության վառ դրսևորումն է նրան «Ժողովուրդների միջև խաղաղության ամրապնդման համար» միջազգային Լենինյան մրցանակի շնորհումը:

Ինչպես նախորդ, այնպես էլ այս հատորում պարզորոշ արտացոլված է մարքս-լենինյան տեսության ու պրակտիկայի օրգանական միասնությունը, որը բնորոշ է մեր կուսակցության գործունեությանը, ցույց է տրված կոմունիստական շինարարության հաջողությունների անխզելի կապը գիտական կոմունիզմի հետագա ստեղծագործական զարգացման հետ: «Կոմունիստական շինարարության հաջողությունները,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— մեծապես կախված են մարքս-լենինյան տեսության զարգացումից, որը մեր հուսալի գիտական կողմնացույցն է: Մեր կուսակցության համագումարների և Կենտկոմի պլենումների որոշումները, կուսակցության կարևորագույն փաստաթղթերը մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացման օրինակ են: Բայց մեր առջև կանգնած խնդիրների բնույթն իսկ պահանջում է հասարակական զարգացման տեսական պրոբլեմների ավելի ու ավելի ակտիվ մշակում, ստեղծագործական մոտեցում կյանքի երևույթների նկատմամբ...

Ինչպես որ արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ մենք այժմ չենք կարող բառացիորեն ոչ մի առաջընթաց քայլ անել առանց գիտության նորագույն նվաճումների օգնության, այնպես էլ մեր հասարակության կյանքում գիտության զարգացումն անհրաժեշտ բազա է որոշումներ ընդունելու, ամենօրյա պրակտիկայի համար» (էջ 130—131):

**Լենինյան կուրսով** գրքին բնորոշ է նորարարական, լենինյան մոտեցումը հասարակական բոլոր երևույթների ուսումնասիրմանը, նրա էջերում մարքս-լենինյան դիրքերից վերլուծվում են տեսական բազմաթիվ պրոբլեմներ:

### 1

Մեր բազմազգ երկրի աշխատավորներն ամենօրյա հերոսական գործերով իրականացնում են ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումները: Իններորդ հնգամյակի վիթխարի պլանների հաջող իրագործումը մեծապես կնպաստի զարգացած սոցիալիստական հասարակարգի համակողմանի բարգավաճմանը, հայրենիքի տնտեսական հզորության ու միջազգային ասպարեզում նրա դիրքերի առավել ամրապնդմանը: Ուստի, բնական է, որ չորրորդ հատորում մեծ ուշադրություն է նվիրվում համագումարի մշակած քաղաքական կուրսի գիտական հիմնավորմանը: Վերլուծելով կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի, սովետական ողջ ժողովրդի կատարած հսկայական աշխատանքը ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումների կենսագործման ասպարեզում, գրքում վերհանվում են արտադրաուժերի զարգացման, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման հետ առնչվող կարևորագույն պրոբլեմները:

Գրքում խորապես բացահայտվում է ՍՄԿԿ XXIV համագումարից հետո տնտեսական քաղաքականության մեջ կատարված տեղաշարժը: Գլխավոր խնդիրն այն է, ասում է Լ. Ի. Բրեժնևը, որ ներկայումս շեշտը դրվի տնտեսության վարման ինտենսիվ մեթոդների վրա, դրանով իսկ զգալիորեն բարձրացնելով էկոնոմիկայի արդյունավետությունը, այսինքն՝ տնտեսական անն ապահովել առավելապես աշխատանքի արտադրողականության բարձրացման ու գիտատեխնիկական առաջընթացի արագացման, գործող արտադրական կարողությունների լրիվ օգտագործման միջոցով, տնտեսության մեջ ներդրված յուրաքանչյուր ռուբլու, օգտագործվող մետաղի, վառելիքի, ցեմենտի, պարարտանյութերի յուրաքանչյուր տոննայի փոխհատուցումը մեծացնելու միջոցով:

Սովետական ժողովուրդ պատմական նոր հանրությունը մեկ պետության մեջ ապրող տարբեր ազգերի պարզ միագումար չէ, այլ միաձույլ ամբողջություն, միասնական ընտանիք՝ միավորված մարքս-լենինյան ընդհանուր գաղափարախոսությամբ, պատմական ճակատագրի և սոցիալ-տնտեսական կյանքի ընդհանրությամբ, կոմունիզմի կառուցման ընդհանուր նպատակով:

Սովետական Միության էկոնոմիկան, ասում է Լ. Ի. Բրեժնևը, առանձին հանրապետությունների ու մարզերի էկոնոմիկայի գումարը չէ: Դա միասնական տնտեսական մի օրգանիզմ է, որը գոյացել է բոլոր ազգերի ու ազգությունների ընդհանուր տնտեսական նպատակների ու շահերի հիման վրա:

Մեր երկրի գոյության կես դարի ընթացքում ստեղծվել է իր ոգով ու բովանդակությամբ միասնական սովետական սոցիալիստական կուլտուրա: Այդ կուլտուրան, նշում է Լ. Ի. Բրեժնևը, ընդգրկում է մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների կուլտուրայի ու կենցաղի արժեքավոր գծերն ու ավանդույթները: Միաժամանակ, ազգային կուլտուրաները փոխադարձաբար հարստացնում են միմյանց: Մեր կուլտուրան իր բովանդակությամբ, զարգացման գլխավոր ուղղությամբ սոցիալիստական է, բազմազան իր ազգային ձևերով և ինտերնացիոնալիստական՝ ոգով և բնույթով (տե՛ս էջ 80):

Սոցիալիստական բոլոր ազգերի ու ազգությունների սոցիալ-տնտեսական, քաղաքական-իրավական, գաղափարախոսական և հոգևոր կյանքի ընդհանրության հիման վրա, զարգացած սոցիալիզմի պայմաններում, գոյավորվել է կոմունիզմ կառուցող մարդու հայրենասիրական վեհ զգացումը՝ նրա համազգային հպարտությունը: Արդի ժամանակաշրջանում, զարգացնելով ազգային հպարտության լենինյան ըմբռնումը, Լ. Ի. Բրեժնևը, ՍՍՀՄ 50-ամյակի առթիվ զեկուցման մեջ ընդգծում է, որ այժմ մենք ամենայն իրավամբ կարող ենք խոսել մեր ամբողջ ժողովրդի հայրենասիրական մեծ զգացման՝ սովետական մարդու համազգային հպարտության մասին: Դա «վիթխարի, տարողունակ, իր բովանդակությամբ բազմահարուստ զգացում է: Այն մեր երկրի կազմի մեջ մտնող ժողովուրդներից ամեն մեկի ազգային բնական զգացմունքներից ավելի խորն է ու ավելի լայն: Այն ներառել է ողջ լավագույնը, ինչ ստեղծված է միլիոնավոր ու միլիոնավոր սովետական մարդկանց աշխատանքով, խիզախությամբ, ստեղծագործական հանճարով» (էջ 136):

Գրքում քննարկվում են սովետական սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման հարցերը: Կուսակցությունը հաստատակամորեն վարում է սոցիալիստական դեմոկրատիայի առավել կատարելագործման, մասսաների ստեղծագործական ակտիվության բարձրացման, աշխատավորությանը կառավարման գործերին ավելի լայնորեն ներգրավելու կուրս: Այժմ, երբ կուսակցությունը լուծում է էկոնոմիկայի հետագա վերելքի և ժողովրդական տնտեսության կառավարման սիստեմի կատարելագործման խնդիրները, ընդգծում է Լ. Ի. Բրեժնևը, հատուկ նշանակություն են ստանում աշխատավորության առավել լայն ներգրավումը կառավարչական ակտիվ գործունեության ոլորտը, նրանց փորձի ու գիտելիքների առավել լրիվ օգտագործումը այդ աշխատանքում: Այդ բխում է մեր հասարակական սիստեմի բուն էությունից, որին օրգանապես ներհատուկ են իսկական դեմոկրատիզմը, մասսաների ակտիվ մասնակցությունը պետական ու հասարակական բոլոր հարցերի լուծմանը:

Անհրաժեշտ պայմաններ ստեղծելով սովետների գործունեության համար, կուսակցությունը լուրջ ուշադրություն է նվիրում հասարակական կազմակերպությունների, այդ թվում՝ արհմիությունների և կոմերիտմիության գործունեությանը: Կուսակցությունն ու կառավարությունն առավելագույն հոգատարություն են ցուցաբերում երիտասարդ սերնդի նկատմամբ, ընձեռելով բոլոր հնարավորությունները նրա հոգևոր ու ֆիզիկական զարգացման, քաղաքացիական ու քաղաքական ակտիվության բարձրացման համար: ՀամԼԿԵՄ XVII համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառը ջերմորեն ընդունեցին կոմերիտականները և պատրաստակամություն հայտնեցին կուսակցության հոգատարությանը պատասխանել հայրենանվեր նորանոր սխրանքներով:



Հատորում մեծ ուշադրություն է նվիրվում սովետական սոցիալիստական ապրելակերպին: Մեր հասարակության կյանքից, ասում է Լ. Ի. Բրեժնևը, մեկընդմիշտ վերացել են մարդու շահագործումը մարդու կողմից, ճնշման, անհավասարության, խտրականության բոլոր ձևերը: Ազգային թշնամանքն ու անվստահությունն իրենց տեղը զիջել են բարեկամության ու եղբայրության հարաբերություններին: Սովետական ապրելակերպին բնորոշ են իրավահավասարությունը, կոլեկտիվիզմը, ընկերական փոխօգնությունը, աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքը, իսկական դեմոկրատիզմը, խոր հումանիզմը և հարգանքը յուրաքանչյուր քաղաքացու իրավունքների ու անձնավորության հանդեպ: Սովետական երկրի քաղաքացին վստահ է վաղվա օրվա նկատմամբ, չի վախենում սոցիալական այնպիսի չարիքներից, ինչպիսիք են գործազրկությունն ու աղքատությունը, նրան բնորոշ են սոցիալական լավատեսությունը, հավատը ապագայի նկատմամբ:

Սոցիալիզմի ընձեռած պայմանների շնորհիվ ձևավորվում է կոմունիզմ կառուցող սովետական նոր մարդը՝ օժտված կոմունիստական բարոյականության վսեմ հատկանիշներով: «Հավատարիմ ծառայություն իր սոցիալիստական հայրենիքին, բարեխիղճ վերաբերմունք աշխատանքի նկատմամբ, բարձր գիտակցականություն, միմյանց օգնելու պատրաստակամություն՝ ահա թե ինչում են դրսևորվում մարդկանց բնավորության և վարքագծի նոր, կոմունիստական գծերը» (էջ 568):

Կոմունիզմի բուն էությունը, ընդգծում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, որոշվում է նրանով, որ քաղաքացիներն ունեն գիտակցականության բարձր աստիճան, հասարակության հանդեպ պատասխանատվության զգացում: Ուստի, բոլոր քաղաքացիներին հասարակական գիտակցությամբ համակելը կոմունիստական շինարարության պրոցեսի կարևորագույն խնդիրներից մեկն է: «Այդ աշխատանքը կուսակցությունը կատարում է և կկատարի ավելի լայն ճակատով: Այստեղ փաստորեն նշանակություն ունի ամեն ինչ՝ թե ընտանիքի ճիշտ մթնոլորտը, թե ուսումնական պրոցեսի հմուտ կազմակերպումը, թե աշխատանքային կոլեկտիվում տիրող առողջ իրադրությունը և թե ուրիշ շատ բաներ: Այս գործում հսկայական դեր ունեն, անշուշտ, կուլտուրայի, արվեստի, մասսայական ինֆորմացիայի միջոցների աշխատողները: Կուսակցության գաղափարա-դաստիարակչական աշխատանքում նրա ակտիվ օգնականները միշտ եղել են արհմիությունները, կոմերիտմիությունը և մասսայական հասարակական մյուս կազմակերպությունները: Այժմ այս իմաստով նրանց խնդիրներն է՛լ ավելի պատասխանատու են դառնում» (էջ 130):

Հատորի նյութերում բազմակողմանի լուսաբանվում է սոցիալիստական հասարակության կյանքի բոլոր ոլորտներում կոմունիստական կուսակցության ղեկավար դերի վերաբերյալ լենինյան հիմնարար դրույթը: Արդի ժամանակաշրջանում առավել լրիվ են բացահայտվում մեր կուսակցությանը բնորոշ հատկանիշները՝ անխզելի կապը աշխատավոր զանգվածների հետ, մշտապես նրանց ձայնը լսելու, նրանցից սովորելու ունակությունը, նորի, առաջադիմականի պաշտպանությունը, պայքարը մեր առաջընթացի խոչընդոտների դեմ: Կոմունիստական կուսակցությունը հավատարմորեն ծառայում է ժողովրդին, հաստատակամորեն պայքարում հանուն մեր հայրենիքի փառքի ու հզորության, միջազգային ասպարեզում նրա հեղինակության բարձրացման: Իր բազմամյա գործունեության ընթացքում լենինյան կուսակցությունը պատվով է կատարել ղեկավարի, ավանգարդի դժվարին պարտականությունները: «Նվաճելով բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների անսահման վստահությունը,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— նա կարողացավ ստեղծել զարգացած սոցիալիստական հասարակարգ, համաժողովրդական պետություն, աշխարհի խոշորագույն երկիրը դուրս բերել կոմունիստական շինարարության մայրուղին» (էջ 271):

Կոմունիստական կուսակցության ուժը հավատարմությունն է մարքսիզմ-լենինիզմին, այդ հեղափոխական ուսմունքի նկատմամբ ստեղծագործական մոտեցումը: Գիտական կոմունիզմի տեսությունն ստեղծագործաբար կիրառե-

յու շնորհիվ մեր կուսակցությունը պատմական վիթխարի հաջողությունների է հասել սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ասպարեզում: «Լենինի ժամանակներից ի վեր Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը հեղափոխական տեսության խոր յուրացումը, նրա ստեղծագործական զարգացումը, ամեն տեսակ հակառակորդներից նրա հետևողական պաշտպանությունը միշտ էլ դասել է իր ամենակարևոր, ամենակենսական խնդիրների շարքին: Տեսության նկատմամբ հենց այդպիսի մոտեցումը կուսակցությանը հնարավորություն է ընձեռել տանելու այնպիսի հաղթանակներ, որոնցով մենք իրավամբ հպարտանում ենք: Այդպիսի մոտեցումը երաշխավորում է մեր նոր հոյակապ հաջողությունները նաև գալիք տարիներին» (էջ 271):

### 3

**Լենինյան կուրսով** գրքում տրվում է արդի միջազգային իրադրության քաղաքական խոր վերլուծությունը, բացահայտվում մեր կուսակցության արտաքին քաղաքականության խաղաղասիրական էությունը, հիմնավորվում ժողովուրդների անվտանգության ու խաղաղության ամրապնդման, ազատության ու ազգային անկախության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար մղվող պայքարի պրոբլեմների նկատմամբ ՍՄԿԿ դիրքորոշումը:

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը հետևողականորեն կենսագործում են ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած խաղաղության ծրագիրը, որը, ինչպես ասում է Լ. Ի. Բրեժնևը, ունի մի վեհ ձգտում՝ հասնել այն բանին, որ հողագնդի երկինքը միշտ մաքուր լինի, որ ընդմիշտ լռեն հրանոթները, իսկ հրթիռներն օգտագործվեն միայն խաղաղ գործերի համար, միջուկային էներգիայի անսպառ ուժերը ծառայեն բացառապես աշխատավորության բարօրության և երջանկության նպատակներին: Ահա թե ինչու խաղաղության ծրագիրը ջերմ հավանության է արժանանում բանվորների ու գյուղացիների, խաղաղ աշխատանքի մարդկանց շրջանում, ահա թե ինչու այն վայելում է նրանց գործուն պաշտպանությունը (տե՛ս էջ 257):

Հատորի նյութերը համոզիչ ցույց են տալիս լենինյան կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի, ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոյի և անձամբ ընկեր Բրեժնևի արտաքին քաղաքական վիթխարի գործունեությունը խաղաղության ծրագրի իրականացման, համաշխարհային սոցիալիզմի դիրքերի ամրապնդման համար:

Սովետական Միության արտաքին քաղաքականությունն իր բովանդակությամբ ու նպատակներով միշտ եղել է ու կլինի դասակարգային, սոցիալիստական: Եվ այդ քաղաքականության հենց սոցիալիստական բնույթը, շեշտում է ընկեր Բրեժնևը, կանխորոշում է նրա խաղաղասիրությունը:

ՍՍՀՄ արտաքին քաղաքականությունն ապահովում է սովետական մարդկանց խաղաղ, ստեղծագործ աշխատանքը, բարենպաստ պայմաններ ստեղծում կոմունիզմի կառուցման, սոցիալիզմի դիրքերի ամրապնդման, համաշխարհային հեղափոխական պրոցեսի ուժեղացման համար: Սովետական արտաքին քաղաքականության սկզբունքները, նշված է գրքում, այսօր հայտնի են ամբողջ աշխարհին: Դա սոցիալիստական համագործակցության երկրների եղբայրական միասնության ամրապնդման, ազգային ու սոցիալական ազատագրության համար պայքարող ժողովուրդների հետ դաշինքի սերտացման, տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության, ագրեսիայի դեմ վճռական պայքարի քաղաքականություն է: Դա ակտիվ և ազնիվ դիվանագիտության, ստանձնած պարտավորությունների անշեղ կատարման քաղաքականություն է: Այն համապատասխանում է սոցիալիզմի և բոլոր ժողովուրդների շահերին (տե՛ս էջ 257):



ՍՄԿԿ և սովետական պետության արտաքին քաղաքականությունն իրականացվում է սոցիալիզմի երկրների հետ սերտ համագործակցությամբ: Սոցիալիստական երկրների հարաբերությունների ամրապնդման գործում մեծ ավանդ են ընկեր Բրեժնևի հանդիպումներն ու բանակցությունները եղբայրական կոմկուսների ու պետությունների ղեկավարների հետ: Սոցիալիստական երկրների համաձայնեցված ու միասնական գործողությունների համար կարևոր նշանակություն ունեն Ղրիմի ավանդական հանդիպումները, Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունները:

Գրքում հանգամանորեն լուսաբանվում են սոցիալիստական սիստեմի հետագա զարգացման, եղբայրական կուսակցությունների գործողությունների առավել միասնության պրոբլեմները: Կոլեկտիվ ջանքերի շնորհիվ, դասակարգային թշնամու դեմ մղված համառ պայքարում, ասում է Լ. Ի. Բրեժնևը, կոփվեց սոցիալիստական պետությունների ամրակուռ դաշինքը, գոյացավ նրանց բազմակողմանի եղբայրական համագործակցության հուսալի սիստեմը: Մենք սովորեցինք հաջողությամբ իրականացնել ամենօրյա սովորական աշխատանքը, համբերությամբ գտնել հարցերի արդարացի լուծումը, որոնք կապիտալիզմի պայմաններում անլուծելի են: Մենք սովորեցինք ճիշտ զուգորդել անհատի և ընդհանուրի շահերը, մեր ճանապարհից վերացնելով այն ամենը, ինչը կարող էր խանգարել, դժվարացնել ընդհանուր առաջընթացը: Սոցիալիստական երկրների միասնությունը, համագործակցությունը, համատեղ գործողությունները այժմ մեզ անհրաժեշտ են սոցիալիստական հասարակության զարգացման ու կոմունիզմի կառուցման խնդիրներն արագ ու արդյունավետ լուծելու, խաղաղությունն առավել հաջողությամբ պաշտպանելու և ամրապնդելու, իմպերիալիզմի ագրեսիվ գործողություններին, սոցիալիզմի շահերի ոտնահարման բոլոր փորձերին հակահարված հասցնելու համար (տե՛ս էջ 92):

Սովետական Միության և սոցիալիստական մյուս պետությունների առաջընթացին, նշված է գրքում, մեծապես նպաստում է նրանց եղբայրական լայն համագործակցությունը, որն այժմ ընդգրկում է մեր ժողովուրդների կյանքի ու գործունեության բոլոր ոլորտները: Համատեղ գործողությունները քաղաքականության մեջ, պլանների ու աշխատանքի բաժանման կոորդինացումը էկոնոմիկայում, փորձի և կուլտուրայի արժեքների փոխանակումը հասարակական կյանքում— այս ամենը փոխհարստացնում է սոցիալիստական յուրաքանչյուր երկրի:

Ներկա հատորում զգալի տեղ է հատկացված միջազգային կոմունիստական շարժման միասնության հարցերին: Մեր կուսակցությունը, հավատարիմ պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին, եղբայրական կուսակցությունների 1969 թ. խորհրդակցության մշակած գծին, լուրջ ավանդ է ներդնում միջազգային կոմունիստական, բանվորական շարժման հզորացման ու ծավալման գործում, բոլոր ուժերով նպաստում հակաիմպերիալիստական ուժերի համախմբանը: ՍՄԿԿ և մարքս-լենինյան բոլոր կուսակցությունների հետևողական պայքարը աջ և «ձախ» օպորտունիզմի դեմ մեծապես նպաստում է միջազգային կոմունիստական շարժման քաղաքական ու գաղափարական միասնության ամրապնդմանը, խթանում հակաիմպերիալիստական բոլոր ուժերի պայքարը:

Ընկեր Բրեժնևի ճառերում ու ելույթներում համակողմանի վերլուծվում են կապիտալիզմի արդի փուլի առանձնահատկությունները, տեսական խորությամբ վերլուծվում կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի սաստկացման, կապիտալի աշխարհում տեղի ունեցող սոցիալ-տնտեսական, քաղաքական ու գաղափարախոսական պրոցեսները: Գրքում պարզորոշ ցույց է

տրվում, որ համաշխարհային սոցիալիզմի օրավուր աճող հզորությունը կասեցնում է իմպերիալիզմի հակաժողովրդական գործողությունները, սահմանափակում նրա ազդեցության ոլորտները: Այժմ կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի, աշխատավոր լայն մասսաների պայքարը մոնոպոլիաների գերիշխանության դեմ, նրանց գործադուլային շարժումը, քաղաքական ակտիվ պայքարը հանուն իրենց սոցիալական ու քաղաքական իրավունքների, կապիտալի աշխարհում սոցիալական խոր հակասությունների սրման վկայություններ են:

Մոնոպոլիաների տիրապետության դեմ դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար մղվող պայքարում գլխավոր ուժը, ասում է Լ. Ի. Բրեժնևը, եղել և մնում է բանվոր դասակարգը՝ արդիականության ամենաառաջավոր հեղափոխական դասակարգը: Բանվորական շարժումը կապիտալի աշխարհում դարձել է հզոր, լավ կազմակերպված և քաղաքականապես ակտիվ:

Չորրորդ հատորում քննարկվում են արդի ազգային-ազատագրական շարժման պրոբլեմները, զարգացող երկրներում ծագող սոցիալ-տնտեսական ու քաղաքական արմատական հարցերը: Ազգային-ազատագրական շարժումը մեծ հաղթանակներ է տարել գաղութատիրության, իմպերիալիզմի, ռասիզմի և ռեակցիայի դեմ մղած անդուլ պայքարում:

Ներկայումս ազգային-ազատագրական շարժումը շատ երկրներում վերածվել է ֆեոդալական ու կապիտալիստական շահագործողական հարաբերությունների դեմ մղվող ակտիվ պայքարի: Ասիայի ու Աֆրիկայի՝ գաղութատիրության լուծը թոթափած մի շարք երկրներ ընթանում են զարգացման ոչ կապիտալիստական ուղիով: Գրքում բացահայտվում են իմպերիալիզմի նեոգաղութարարական պլանները, որոնց նպատակն է կախյալ վիճակում պահել ազատագրված երկրները: Սովետական Միությունը, սոցիալիստական մյուս երկրները շարունակ օգնել և օգնում են իրենց ազգային ու սոցիալական ազատության համար մարտնչող բոլոր ժողովուրդներին: Այդ անշահախնդիր օգնությունը ազգային-ազատագրական շարժման հաջողության հուսալի երաշխիքն է: «Մեր կուսակցությունը, մեր ժողովուրդը,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի և գաղութային ճնշումից ազատագրված երկրների առաջադիմական քաղաքականության զորավիգն են: Ընդսմին կկամենայինք ընդգծել, որ ժամանակակից պայմաններում, մեր կարծիքով, առաջադիմական է այնպիսի քաղաքականությունը, որը նշանակում է՝ վճռական հակահարված նեոգաղութատիրությանը, պայքար երիտասարդ պետությունների սուվերենության ու անկախության ամրապնդման, իմպերիալիզմից նրանց տնտեսական ազատագրության համար, պայքար խաղաղության, սոցիալական առաջադիմության և մեր ժամանակի առաջավոր մյուս ուժերի հետ, առաջին հերթին սոցիալիզմի երկրների հետ, համերաշխության ամրապնդման համար» (էջ 97): Հիրավի, ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների հետ գաղութակալությունից ազատագրված երիտասարդ պետությունների բարեկամությունն ու համագործակցությունը տվել ու տալիս են դրական արդյունքներ, նրանց օգնում հաջողությամբ պայքարելու իմպերիալիզմի դեմ, ամրապնդելու իրենց անկախությունը:

Գրքում հանգամանորեն ցույց են տրված միջազգային ասպարեզում վերջին տարիներին կատարված դրական տեղաշարժերը: ՍՍՀՄ և սոցիալիստական մյուս երկրների արտաքին քաղաքական ջանքերի շնորհիվ միջազգային հարաբերություններում «սառը պատերազմի» քանհինգամյա ժամանակաշրջանին, ասում է Լ. Ի. Բրեժնևը, փոխարինում է տարբեր հասարակական սիստեմներ ունեցող պետությունների հարաբերություններում խաղաղ գոյակցության սկզբունքների առավել լայն հաստատման ժամանակաշրջանը: Պատմական ւայս, հիրավի, կենսական իրողության մեջ մեծ դեր խաղացին ԳՖՀ-ի



հետ Սովետական Միության, Լեհաստանի, ԳԴՀ-ի ու Չեխոսլովակիայի կնքած պայմանագրերը, Արևմտյան Բեռլինի վերաբերյալ բազմակողմ ու երկ-
կողմ համաձայնագրերը, որոնք նպաստեցին Եվրոպայում լարվածության
թուլացմանը, խաղաղության ու ժողովուրդների անվտանգության ապահով-
մանը: Միջազգային իրադրության նորմալացման գործում կարևոր նշանա-
նակություն ունեցան ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժ-
նևի և սովետական մյուս ղեկավարների բանակցությունները ԱՄՆ-ի, Ֆրան-
սիայի, Ճապոնիայի, Հնդկաստանի և շատ այլ երկրների լիդերների ու քաղա-
քական գործիչների հետ:

Միջազգային վիթխարի նշանակություն ունեն ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի հա-
րաբերություններում կատարված դրական փոփոխությունները: Երկու երկըր-
ների միջև կնքված պայմանագրերն ու համաձայնագրերը (հակահրթիռային
պաշտպանության սիստեմների սահմանափակման, ստրատեգիական հարձա-
կողական սպառազինությունների սահմանափակման որոշ միջոցառումների,
միջուկային պատերազմը կանխելու, առողջապահության, բնակարանային և
այլ տիպի շինարարության բնագավառում համագործակցելու, տնտեսական,
արդյունաբերական, տեխնիկական համագործակցության վերաբերյալ և այլն)
խոշոր ավանդ են սովետա-ամերիկյան հարաբերությունների բարելավման
գործում:

Այս ամենը, նշում է ընկեր Բրեժնևը, սոցիալիզմի խաղաղասիրական քա-
ղաքականության կոնկրետ, համոզիչ արդյունքն է: Դա շահավետ է բոլոր ժո-
ղովուրդների համար: Սոցիալիստական պետությունների նախաձեռնությամբ
տեղի ունեցող այդպիսի փոփոխությունները լիովին համապատասխանում են
սոցիալիզմի իդեալներին: Սակայն այս ամենը, ընդգծվում է գրքում, չի նշա-
նակում, թե անհետացել է երկու սիստեմների հակադրությունը: Ավելին, որոշ
պետությունների ազդեցիկ շրջանները ձգտում են, որ այսուհետև ևս աշխար-
հում պահպանվի լարվածությունը, աճեն ռազմական բյուջեները, շարունակվի
սպառազինությունների մրցավազքը: Համաշխարհային ասպարեզում շարու-
նակվում են երկու սիստեմների մրցությունը, հակամարտությունը: Հարկ է
այնպես անել, որ այդ պրոցեսը չվերաճի երկրների միջև զինված ընդհարում-
ների ու պատերազմների և չխոչընդոտի տարբեր հասարակարգ ունեցող պե-
տությունների փոխշահավետ համագործակցության զարգացմանը:

Իմպերիալիզմի ռեակցիոն ուժերին ձայնակցում են Պեկինի լիդերները,
որոնց մեծապետական, հակալենինյան, հակասովետական քաղաքականու-
թյունը վնասում է միջազգային լարվածության թուլացմանը, արգելակում
ՍՍՀՄ և սոցիալիստական մյուս երկրների խաղաղասիրական գործողու-
թյունները: Գրքում համոզիչ փաստերով ու հիմնավորված հակահարված է
տրվում չինական ղեկավարների հակասովետական հերյուրանքներին, այն
բոլոր փորձերին, որոնց նպատակն է խարխլել համաշխարհային սոցիալիզ-
մի, միջազգային կոմունիստական ու ազգային-ազատագրական շարժման
միասնությունը: Պատշաճ հակահարված տալով Պեկինի լիդերների գործո-
ղություններին, մեր կուսակցությունը, սովետական կառավարությունը, միա-
ժամանակ հաստատակամորեն աշխատում են նորմալացնել հարաբերություն-
ները ՉԺՀ-ի հետ, վերականգնել սովետա-չինական բարեկամությունը: Մենք
ուզում ենք, նշում է Լ. Ի. Բրեժնևը, Չինաստանը տեսնել որպես բարգավաճող
սոցիալիստական պետություն, ուզում ենք նրա հետ միասին պայքարել հա-
նուն խաղաղության՝ ընդդեմ իմպերիալիզմի: Թե դա երբ կլինի, կախված է Չի-

նստանից: Մենք չենք նահանջի մեր սկզբունքային մարքս-լենինյան գծից, մշտապես կպաշտպանենք սովետական ժողովրդի պետական շահերը, ՍՍՀՄ տերիտորիայի անձեռնմխելիությունը, վճռական պայքար կմղենք ՉԺՀ-ի ղեկավարության պառակտիչ գործունեության դեմ (տե՛ս էջ 97):

Սովետական Միությունը, մեծ Լենինի պատգամներին հավատարիմ նրա կոմունիստական կուսակցությունը, ասում է Լ. Ի. Բրեժնևը, այսուհետև էլ հաստատակամորեն կպաշտպանեն ժողովուրդների ազատության և անկախության, խաղաղության և սոցիալական առաջընթացի վեհ գործը:

***

Լ. Ի. Բրեժնևի **Լենինյան կուրսով** գրքի չորրորդ հատորի հրատարակումը ունի գաղափարա-քաղաքական կարևոր նշանակություն: Այն օգնում է կոմունիստներին, բոլոր աշխատավորներին խորապես ընկալելու լենինյան կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության հրատապ պրոբլեմները, ոգեշնչում նրանց ավելի մեծ եռանդով կենսագործելու ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները:

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՍԿԶԲՈՒՆՔԸ

Լ. Մ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, դոցենտ

*Հասարակական կյանքի տարբեր ոլորտների կառավարումը միշտ եղել և մնում է մարդկային գործունեության ամենաբարդ բնագավառներից մեկը։ Սակայն հասարակության կառավարման գիտական կազմակերպումն առաջին անգամ հասարակական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունն է դառնում միայն կոմունիստական ֆորմացիայի հաստատման ու զարգացման պայմաններում։ Եվ պատահական չէ, որ մեր կուսակցությունն առանձնապես կարևորում է գիտական կառավարման հարցերը։ ՍՄԿԿ XXIV համագումարին Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ և համագումարի բանաձևում ընդգծվում է, որ կառավարման սիստեմի կատարելագործումն ու բարելավումը ոչ թե անցողիկ միջոցառում են, այլ կյանքի կողմից առաջադրվող պրոբլեմների լուծման դինամիկ պրոցես։ Գիտական կառավարման մակարդակի մշտական բարձրացումը կուսակցության գործունեության բաղկացուցիչ մասն է։*

Սոցիալիստական հասարակության գիտական կառավարումն ապահովող հիմնական գործոնների սիստեմում կարևոր տեղ է գրավում հասարակական և անձնական շահերի ներդաշնակ զուգակցումը: *Դա բացատրվում է նախ այն բանով, որ շահերն առհասարակ արտահայտում են տնտեսագիտական և սոցիալական մյուս օրենքների ուղղվածությունը, կազմում հասարակական բոլոր հարաբերությունների հիմքը։ «...Շահը,— գրել են Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը,— ահա թե ինչն է միացնում քաղաքացիական հասարակության անդամներին»* (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 2, стр. 134)։ *Նրանք նշել են, որ իրական կյանքում ոչ ոք չի կարող անել որևէ բան, միաժամանակ դա չանելով հանուն իր այս կամ այն պահանջմունքի (տե՛ս նույն տեղը, հատ. 3, էջ 245)։*

*Վ. Ի. Լենինն ստեղծագործորեն զարգացրեց այդ դրույթները և ցույց տվեց դրանց գործնական նշանակությունը սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման պայմաններում հասարակական հարաբերությունների կարգավորման գործում։ Մենք կարող ենք հաջողությամբ կառավարել, նշում էր նա, եթե միավորենք «...բոլոր աշխատավորներին կենդանի շահերի... անխզելի շղթաներով» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 26, էջ 588)։*

*Գիտական կոմունիզմի ստեղծողների այդ դրույթներն իրենց ստեղծագործական զարգացումն են գտել ՍՄԿԿ համագումարների, Կենտկոմի պլենումների որոշումներում, կուսակցական, պետական և կառավարման մյուս մարմինների պրակտիկ գործունեության մեջ։ Այս կապակցությամբ ՍՄԿԿ XXIV համագումարին Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ ասված է. «Կենտրոնական կոմիտեն, առաջադրելով ու լուծելով մեր քաղաքական սիստեմի հետագա զարգացման պրոբլեմները, գաղափարական բնույթի հարցերը, ելնում էր այն բանից, որ կուսակցության քաղաքականությունն անհրաժեշտ արդյունք է տալիս այն ժամանակ, երբ ճշգրիտ կերպով է հաշվի առնում թե՛ ողջ ժողովրդի և թե՛ նրա բաղկացուցիչ մասերի՝ դասակարգերի ու սոցիալական խմ-*

մար պարգևատրման հրապարակայնությունը, առողջարանային կամ հանգըստյան տան ուղեգրի հատկացումը, արտասահմանյան ուղևորությունները, հերթից դուրս բնակարան հատկացնելը, «կոմունիստական աշխատանքի հարվածային», «մասնագիտությամբ լավագույնը», «արտադրական անդամասի լավագույն վարպետը», «լավագույն ռացիոնալիզատոր» և այլ կոչումներ շնորհելը:

Բարոյական խթանման այդ և նման այլ ձևերի նպատակայնալաց կիրառումը մեծ չափով բարձրացնում է նյութական խթանման արդյունավետությունը և, որ ամենագլխավորն է՝ լայն մասսաներին օգնում է խորապես գիտակցելու անձնական ու հասարակական շահերի միասնության նշանակությունը, ուստի և նպաստում է նրանց կոմունիստական դաստիարակությանը: Առավել մեծ է բարոյական խթանման դերը, որպես ամբողջ կոլեկտիվի գործունեության ընդհանուր արդյունքների արդյունավետության բարձրացման համար պատասխանատվության և շահագրգռվածության ձևավորման միջոց: Այդ առումով իբրև բարոյական խթանման կարևոր գործոններ հանդես են գալիս արտադրության արդյունավետության բարձրացման ուղիների կոլեկտիվ որոնումներում բարձր ակտիվությամբ աչքի ընկած ձեռնարկությունների, արտադրամասերի, բրիգադների լավագույն կոլեկտիվների հրապարակային խրախուսման տարբեր ձևերը: Նույն նպատակին է ծառայում նաև մարդկանց մեջ կոլեկտիվիզմի, սեփական կոլեկտիվի համար հպարտության, արտադրության և երկրի տիրոջ զգացմունքի դաստիարակության նպատակով տարվող աշխատանքը:

Բարոյական ու նյութական խթանման տարբեր ձևերի սերտ փոխազդեցության ապահովումը, անհատի, կոլեկտիվի, հասարակության տնտեսական ու հոգևոր հարաճուն պահանջմունքների ներդաշնակ բավարարումը սոցիալիստական հասարակարգի գիտական կառավարման անհրաժեշտ պահանջն են, կոմունիստական շինարարության վիթխարի խնդիրների հաջող կենսագործման կանխորոշող պայմանը:

---

# ՀՆԳԱՄՅԱԿԻ ՀՐԱՏԱՊ ԽՆԴԻՐՆԵՐԸ

## ՎՃԱՐՈՒՆԱԿ ՊԱՀԱՆՋԱՐԿԻ ԵՎ ՇՈՒԿԱՅԱԿԱՆ ՖՈՆԴԵՐԻ ԲԱԼԱՆՍԱՎՈՐՎԱԾՈՒԹՅՈՒՆԸ

Գ. Ա. ՂԱՐԻԲՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու

Սոցիալիստական էկոնոմիկայում տնտեսության պլանաչափ զարգացման օրենքով ձևավորվում և կարգավորվում է նաև բնակչության դրամական եկամուտների (դրան համապատասխան գնողունակ պահանջարկի) և շուկայական ֆոնդերի միջև եղած համամասնությունը: Ժողովրդական տնտեսության պլանավորման պրակտիկայում դա իրականացվում է հիմնականում բնակչության դրամական եկամուտների և ծախսերի բալանսավորման միջոցով:

Սոցիալիստական հասարակարգում ժողովրդական տնտեսության զարգացման առանձին փուլերում չի բացառվում բնակչության դրամական եկամուտների և շուկայական ֆոնդերի մասնակի անհամապատասխանությունը: Դա կարող է ծագել օբյեկտիվ և սուբյեկտիվ բնույթի տարբեր պայմաններից ու գործոններից. օրինակ՝ բնակչության դրամական եկամուտների և անձնական սպառման առարկաների աճի ու օգտակար ծառայությունների ընդլայնման անհրաժեշտ տեմպերի խախտումից կամ բնակչության պահանջմունքներին ոչ համապատասխան ապրանքների արտադրությունից: Տնտեսական առանձին շրջաններում կամ միութենական հանրապետություններում որոշ չափով կարող է դեր խաղալ նաև դրամի միգրացիան, ապրանքային ֆոնդերի անհամաչափ բաշխումը, կենցաղային և այլ բնույթի ծառայությունների կազմակերպման անբավարար մակարդակը և այլն:

1960-ական թվականներից սկսած, ինչպես Սովետական Միությունում, այնպես էլ մեր հանրապետությունում, նկատելի է բնակչության դրամական եկամուտների ավելի արագ աճ, քան վճարովի ծառայությունների ու անձնական սպառման մի շարք ապրանքների արտադրությունը: Այդ պատճառով գոյացել է որոշ անհամապատասխանություն՝ բնակչության գնողունակ պահանջարկի և շուկայական համապատասխան ֆոնդերի միջև: Դա, ամենից առաջ, արտահայտվում է բնակչության դրամական եկամուտների, խնայողությունների և մանրածախ ապրանքաշրջանառության աճի տեմպերի զգալի տարբերությունների մեջ:

Հայկական ՍՍՀ բնակչության դրամական եկամուտների, խնայողությունների և մանրածախ ապրանքաշրջանառության աճը 1960—1971 թթ. (տոկոսներով)[1].

| | 1960 թ. | 1970 թ. | 1971 թ. |
|---|---|---|---|
| Բնակչության դրամական եկամուտները | 100,0 | 286,8 | 310,1 |
| Մանրածախ ապրանքաշրջանառությունը | 100,0 | 245,0 | 268,0 |
| Բնակչության ավանդները խնայողական դրամարկղներում | 100,0 | 778,0 | 882,0 |

[1] Տե՛ս Армения в единой семье народов СССР. Ереван, 1972, стр. 194:

Աղյուսակի տվյալները ցույց են տալիս, որ բնակչության դրամական եկամուտները և հատկապես նրա ավանդները խնայողական դրամարկղներում շատ ավելի արագ են աճում, քան մանրածախ ապրանքաշրջանառությունը: Մինչդեռ ընդհանուր օրինաչափությունն այն է, որ բնակչության դրամական եկամուտների աճը չպետք է գերազանցի մանրածախ ապրանքաշրջանառությանը: Սակայն աճի տեմպերի նշված տարբերությունը չպետք է այդպիսի մեծ չափեր ընդունի, ինչպես բերած աղյուսակում է: Դրանով է բացատրվում նաև մեր հանրապետության բնակչության դրամական խնայողությունների առավել աճը, որը զգալիորեն գերազանցում է միութենական միջին տեմպերը:

Չպետք է մոռանալ նաև այն, որ բացի խնայողական դրամարկղներից, որոշ դրամական միջոցներ պահվում են անմիջապես բնակչության մոտ: Հետևաբար, նշված ժամանակահատվածում բնակչության դրամական եկամուտների, խնայդրամարկղներում նրա ունեցած ավանդների և մանրածախ ապրանքաշրջանառության աճի տեմպերի այդ նշանակալի տարբերությունը բնակչության գնողունակ պահանջարկի և շուկայական անհրաժեշտ ֆոնդերի աճի բալանսավորման որոշ խախտման հետևանք է: Բնակչության դրամական եկամուտների արագ աճը Հայկական ՍՍՀ-ում բացատրվում է սոցիալ-տնտեսական բնույթի հետևյալ հիմնական պատճառներով: Առաջին՝ վերջին տասնամյակում մեր հանրապետությունում բանվոր-ծառայողների միջին աշխատավարձը աճել է ավելի արագ, քան ՍՍՀՄ-ում ամբողջությամբ վերցրած:

ՍՍՀՄ և ՀՍՍՀ բանվոր-ծառայողների միջին-ամսական աշխատավարձի դինամիկան[1]

| Տարիներ | Միջին-ամսական աշխատավարձը (ռուբլիներով) | | 1960 թ. նկատմամբ (տոկոսներով) | | ՀՍՍՀ մակարդակը ՍՍՀՄ նկատմամբ (տոկոսներով) |
|---|---|---|---|---|---|
| | ՍՍՀՄ | Հայկ. ՍՍՀ | ՍՍՀՄ | Հայկ. ՍՍՀ | —— |
| 1960 | 80,6 | 75,9 | 100,0 | 100,0 | 94,2 |
| 1965 | 96,5 | 92,6 | 119,7 | 122,0 | 96,0 |
| 1972 | 130,0 | 129,9 | 161,3 | 171,2 | 99,9 |

Սկսած 1972 թ. ՀՍՍՀ բանվոր-ծառայողների միջին-ամսական աշխատավարձը համարյա հավասարվեց միութենական միջին մակարդակին: Նշված ժամանակահատվածում արագ են աճել նաև կոլտնտեսականների դրամական եկամուտները: Այսպիսով, աշխատավարձի արագ բարձրացումը բնակչության գնողունակ պահանջարկի արագ աճի կարևոր գործոնն է:

Մեր հանրապետության բնակչության դրամական եկամուտների արագ աճին նպաստել են նաև բնակչության սոցիալական կազմի տեղաշարժերը: Ըստ մարդահամարի տվյալների, 1940 թ. հանրապետությունում քաղաքային բնակչության տեսակարար կշիռը կազմել է 28, իսկ 1970-ին՝ 60 տոկոս, ավելի բարձր, քան ՍՍՀՄ-ում (56 տոկոս): Ավելացել է նաև բանվոր-ծառայողների թիվը և բարձրացել նրանց տեսակարար կշիռն ամբողջ աշխատունակ բնակչության մեջ, որը և նպաստել է բնակչության դրամական եկամուտների արագ աճին:

Բնակչության դրամական եկամուտների և պետական ու կոոպերատիվ առևտրում շուկայական անհրաժեշտ ֆոնդերի միջև առաջացած որոշ անհամապատասխանության դրսևորման ձևերից է նաև կոլտնտեսային շուկայից քաղաքացիների գնումների համեմատաբար բարձր տեսակարար կշիռը և երկարատև օգտագործման իրերի (կահույք, մարդատար ավտոմեքենա և այլն) ձեռք բերման նպատակով դրամի միգրացիան հանրապետության սահմաններից դուրս (հատկապես կենտրոնական քաղաքները): Հասկանալի է, որ նշված երևույթները բացասաբար են անդրադառնում ոչ միայն հանրապետության դրամական շրջանառության նորմալ ընթացքի, այլև աշխատավորների դրամական եկամուտների ռեալ բովանդակության վրա:

[1] Տե՛ս Народное хозяйство СССР в 1972 году. Статистический ежегодник. М., 1973, стр. 516. Народное хозяйство Армянской ССР в 1972 г., Ереван. 1973 г., стр. 117:



Զարգացած սոցիալիստական հասարակարգում, մասնավորապես ընթացիկ հնգամյակում և առաջիկա հեռանկարում, սովետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացման առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ աշխատավորների դրամական եկամուտների բարձր տեմպերով աճը նախատեսվում է ապահովել համապատասխան ապրանքային զանգվածով և ծառայություններով, այսինքն՝ պետք է պահպանվի անհրաժեշտ բալանսավորվածություն բնակչության գնողունակ պահանջարկի և շուկայական ֆոնդերի միջև:

ՍՄԿԿ XXIV համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Որոշելով սովետական մարդկանց եկամուտների էական բարձրացման, բնակարանային շինարարության ընդլայնման, քաղաքների ու գյուղերի բարեկարգման միջոցառումները, Կենտրոնական կոմիտեն գտնում է, որ այսօր առանձնահատուկ նշանակություն է ստանում նաև պարենային և արդյունաբերական ապրանքներով, ինչպես նաև սպասարկումով բնակչության հարանուն վճարունակ պահանջարկն ապահովելու խնդիրը: Ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը պետք է աճի ավելի արագ տեմպերով, քան սովետական մարդկանց դրամական եկամուտները» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 58):

Որպեսզի առաջադրված այս խնդիրը կատարվի, այսինքն՝ անձնական սպառման առարկաների և ծառայությունների արտադրության տեմպերը գերազանցեն բնակչության գնողունակ պահանջարկի աճման տեմպերին, անհրաժեշտ է մի կողմից սիստեմատիկաբար և մշտապես բարձրացնել հասարակական արտադրության տնտեսական արդյունավետությունը և մյուս կողմից շարունակ կատարելագործել ժողովրդական տնտեսության կառուցվածքը, նրա գլխավոր համամասնությունները: Ա. Ն. Կոսիգինը XXIV համագումարում ընդգծեց ընթացիկ հնգամյակում և առաջիկայում մեր հասարակարգի զարգացման հետևյալ երկու առանձնահատկությունները. «...Նախ, ամբողջ ժողովրդական տնտեսության է՛լ ավելի մեծ շրջադարձ դեպի ժողովրդի բարեկեցության բարձրացումը, նրա աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավում: ...Երկրորդ, ամբողջ հանրային արտադրության ինտենսիվացման ուժեղացում և նրա արդյունավետության բարձրացում գիտատեխնիկական առաջընթացի էական արագացման հիման վրա» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 183):

Հասարակական արտադրության ինտենսիվացման և նրա տնտեսական արդյունավետության բարձրացման կուրսը օբյեկտիվորեն բխում է ինչպես ժողովրդի բարեկեցության բարձրացման գլխավոր խնդրից, այնպես էլ ընդլայնված վերարտադրության, ժողովրդատնտեսական համամասնությունների կատարելագործման, այդ թվում բնակչության գնողունակ պահանջարկի և շուկայական ֆոնդերի արագ աճի ու ծառայությունների ընդլայնման միջև անհրաժեշտ բալանսավորվածություն ստեղծելու խնդիրներից: Զարգացած սոցիալիզմի արդի փուլում հիմնական տնտեսական օրենքի գործողությունը պահանջում է ազգային եկամտի և, հատկապես, սպառման ֆոնդի բացարձակ չափերի առավել աճ: Միաժամանակ, դրան զուգահեռ, անհրաժեշտ են ոչ-արտադրական ոլորտի, այսինքն՝ ծառայությունների արտադրության աճի առավել բարձր տեմպեր, որն իր հերթին պահանջում է այդ ոլորտում ընդգրկել ավելի մեծ թվով աշխատողներ: Եթե դրան ավելացնենք ընդհանուր դեմոգրաֆիկ իրավիճակում ծննդաբերության նվազման տենդենցը, ինչպես նաև բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության սիստեմում սովորողների թվի արագ աճը, ապա էապես կրճատվում են նյութական արտադրության ճյուղերում կիրառվող աշխատանքային ռեսուրսների աճման և դրանով պայմանավորված ժողովրդական տնտեսության էքստենսիվ զարգացման հնարավորությունները: Ահա այդ պատճառով, ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյա պլանով նախատեսվում է աշխատանքի արտադրողականության

*բարձրացման հաշվին ապահովել ազգային եկամտի աճման 80—85, արդյունաբերական արտադրանքի աճման 87—90 տոկոսը և գյուղատնտեսական արտադրության ու շինարարության ամբողջ աճը։ Ծախսված յուրաքանչյուր միավոր աշխատանքի դիմաց առավել արտադրանք ստանալու արդյունավետ ուղին գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների օրգանական միակցումն է տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ։ Այդ պատճառով արտադրության ինտենսիվացման և նրա տնտեսական արդյունավետության բարձրացման առաջին և հիմնական միջոցը գիտատեխնիկական առաջադիմությունն է և դրա զուգակցումը սոցիալիստական էկոնոմիկայի պլանաչափ զարգացման տնտեսական առավելությունների հետ։*

*Հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման հիմնական գործոններից մեկը ձեռքի աշխատանքի կրճատումն է։ Հաշվարկները ցույց են տվել, որ ՍՍՀՄ-ում արդյունաբերության բնագավառում աշխատող բանվորների 45 տոկոսը դեռևս գործում է ձեռքի աշխատանքով։ Գյուղատնտեսության ոլորտում այն ավելի բարձր է։ Հետևաբար, հրատապ է դարձել գիտա-տեխնիկական առաջընթացի ծավալմամբ ձեռքի աշխատանքի կրճատման խնդիրը։*

*Կարևոր է նաև արտադրանքի նյութատարության իջեցումը։ ՍՄԿԿ XXIV համագումարը նշեց արտադրանքի նյութատարության իջեցման ժողովրդատնտեսական նշանակությունը և հետագա ուղիները։ ՍՍՀՄ ժողտնտեսության մեջ ներկայումս նյութական ծախսումները կազմում են տարեկան հարյուրավոր միլիարդ ռուբլի։ Հետևաբար, անհրաժեշտ է խնայողաբար օգտագործել հումքը և բնական ռեսուրսները, քանի որ դրանք անսպառ չեն։*

*Տնտեսական արդյունավետության բարձրացման համար մեծ նշանակություն ունի և հիմնական ֆոնդերի օգտագործման հետագա բարելավումը կամ ֆոնդատվության բարձրացումը։ Իններորդ հնգամյակի վերջին տարում (1975 թ.) ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերը կհասնեն շուրջ 1 տրիլիոն, իսկ արտադրական հիմնական ֆոնդերը՝ 700 միլիարդ ռուբլու։ Ընդհանրացնելով հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման դերը, Ա. Ն. Կոսիգինը ընդգծեց, որ* «Արտադրության ինտենսիվացման *կուսակցության վերցրած կուրսը որոշում է հանրային աշխատանքի արտադրողականությունը նշանակալիորեն բարձրացնելու, հումքը և նյութերը խնայելու, արտադրաֆոնդերի օգտագործումը բարելավելու, նոր տեխնիկայի արմատավորման, արտադրության գիտական կազմակերպման և ժողովրդական տնտեսության կառավարման մեթոդների կատարելագործման հիման վրա կապիտալ ներդրումների արդյունավետությունը բարձրացնելու անհրաժեշտությունը»* (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, *էջ 187—188*)։

*Զարգացած սոցիալիստական հասարակարգում, հատկապես առաջիկա հեռանկարում, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման և բնակչության կենսամակարդակի աճի ամփոփ ցուցանիշ է դառնում բնակչության պահանջմունքների բավարարման աստիճանը։ Ուստի անհրաժեշտ է կատարելագործել հասարակական արտադրության կառուցվածքը և համամասնությունները։ Լուրջ շրջադարձ կկատարվի նախ ծանր ինդուստրիայի զարգացման մեջ։ Արագ տեմպերով կընդլայնվեն այն ճյուղերը, որոնք արտադրում են արտադրության միջոցներ գյուղատնտեսության, թեթև և սննդի արդյունաբերության, բնակարանային շինարարության, առևտրի և կենցաղի սպասարկման բուռն զարգացման համար։ Վերջին հաշվով, արտադրվող արտադրամիջոցները կապված են սպառման առարկաների արտադրության հետ, քանի որ արտադրամիջոցները արտադրվում են հանուն այն բանի, որպեսզի դրանցով համալրվեն սպառման առարկաներ արտադրող ճյուղերը։*

*Ընթացիկ հնգամյակում մեքենաշինության և մետաղամշակման արտադրության 1,7 անգամ աճի պայմաններում, թեթև և սննդի արդյունաբերության համար սարքավորումների արտադրությունը կավելանա ավելի քան 2, անասնապահության աշխատատար պրոցեսների մեքենայացման համար՝ 2,1 անգամ։*

*Ժամանակակից ծանր արդյունաբերության զարգացման առանձնահատկություններից մեկն էլ ժողովրդական սպառման առարկաների արտադրության ընդլայնումն է։ Օրինակ, ներկայումս ծանր արդյունաբերության ձեռնարկություններում արտադրվում է կուլտուր-կենցաղային նշանակության և տնտեսական գործածության ապրանքների ընդհանուր ծավալի* $^3/_4$*-ը։ Ընթացիկ հնգամյակում այն կավելանա 1,8 անգամ։ Կուլտուր-կենցաղային ապրանքների և տնային գործածության իրերի տեսակարար կշիռը 1970 թ. համեմատությամբ, 1975 թ. կաճի 12,4 տոկոսով։*

*Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում նշեց, որ «Կուտակված արտադրական պոտենցիալը, Կենտրոնական կոմիտեի կարծիքով, հնարավորություն է ընձեռում նոր հնգամյակում որոշ չափով գերազանցել «Բ» խմբի աճի տեմպերը, որը թույլ կտա ապահովել աշխատավորների բարեկեցության նախատեսված վերելքը»* (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, *էջ 58—59*)*։ Հաշվետու զեկուցման մեջ միաժամանակ նշվում է, որ դա չի փոխում արտադրամիջոցների արտադրության առավել արագ զարգացման մեր ընդհանուր կուրսը։ Արտադրամիջոցների, ամենից առաջ ծանր ինդուստրիայի առաջանցիկ աճը մնում է մեր երկրի տնտեսական հզորության և բնակչության կենսամակարդակի սիստեմատիկ բարձրացման հիմնական պայմանը։ Սակայն զարգացած սոցիալիստական հասարակության ժամանակակից փուլի առանձնահատկությունները օբյեկտիվորեն հասցնում են ժողովրդատնտեսական համամասնությունների մեջ էական տեղաշարժերի, որոնք իրենց արտացոլումն են գտնում ստորև բերվող աղյուսակում։*

ՍՍՀՄ արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի աճը (տոկոսներով)[1]

| | 1950—1960 | | 1960—1965 | | 1965—1970 | | 1970—1975 | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| | *1960 թ. 1950 թ. նկատմամբ* | *միջին տարեկան աճը* | *1965 թ. 1960 թ. նկատմամբ* | *միջին տարեկան աճը* | *1970 թ. 1965 թ. նկատմամբ* | *միջին տարեկան աճը* | *1975 թ. 1970 թ. նկատմամբ* | *միջին տարեկան աճը* |
| *Ամբողջ արդյունաբերությունը այդ թվում՝* | 302,9 | 11,7 | 151 | 8,6 | 150 | 8,4 | 147 | 8,0 |
| *«Ա» խումբ* | 324,9 | 12,5 | 158 | 9,6 | 151 | 8,6 | 146 | 7,9 |
| *«Բ» խումբ* | 265 | 10,5 | 136 | 6,3 | 149 | 8,4 | 149 | 8,3 |

*Աղյուսակի տվյալները ցույց են տալիս, որ 1950 թ. մինչև 1960 թ. գերազանցել են «Ա» խմբի աճման տեմպերը։ Այդ դրությունը որոշ չափով փոխվում է ութերորդ հնգամյակում, քանի որ արդյունաբերության մեջ արտադրամիջոցների և սպառման առարկաների աճման տեմպերը միմյանց մոտենում են, որով և պայմաններ են ստեղծվում հետագայում ավելի կատարելագործելու արդյունաբերական հիմնական համամասնությունները։ Այսպիսով, վերջին 20 տարում, միայն ընթացիկ հնգամյակում է նախանշվում արդյունաբերության «Բ» խմբի ավելի արագ աճ, որն ամենից առաջ պայմանավորված է էկոնոմիկայի խոր շրջադարձով դեպի բնակչության կենսամակարդակի բարձրացումը։ Իններորդ հնգամյակում ՍՍՀՄ արդյունաբերության մեջ սպառման առարկաների արտադրության բացարձակ աճը կկազմի 51—55* մլրդ *ռուբլի, այսինքն՝*

1 *Տե՛ս* Е. А. Иванов. XXIV съезд КПСС о соотношении групп «А» и «Б» промышленности, М., стр. 26, 27, 29, 34:

մոտավորապես այնքան, որքան վեցերորդ և յոթերորդ հնգամյակներում միասին վերցրած։

Ընթացիկ հնգամյակում և առաջիկայում կարևոր նշանակություն է ստանում բարձր զարգացած ինդուստրիալ գյուղատնտեսության ստեղծումը և դրանով պայմանավորված արդյունաբերության և գյուղատնտեսության ժողովրդատնտեսական համամասնության կատարելագործումը։ ՍՍՀՄ գյուղատնտեսությունը ֆոնդազինվածությամբ 2, 3, էլեկտրազինվածությամբ 10 անգամ դեռևս ետ է մնում արդյունաբերությունից։ ՍՍՀՄ գյուղատնտեսության հետագա ինդուստրացման համար անհրաժեշտ է, որ արդյունաբերությունը գյուղատնտեսությանը մատակարարի ավելի մեծ քանակով տրակտորներ, կոմբայններ, ավտոմեքենաներ, հանքային պարարտանյութեր, անասնապահական ֆերմաների և թռչնաբուծական ֆաբրիկաների համար սարքավորումներ, շինանյութ և այլն։ Միաժամանակ անհրաժեշտ է, որ գյուղատնտեսական հումքը ավելի շատ արդյունաբերական վերամշակման ենթարկվի։ Միայն ընթացիկ հնգամյակում գյուղատնտեսության մեջ ընդհանուր կապիտալ ներդրումները կկազմեն 129 մլրդ ռուբլի, այսինքն՝ այնքան, որքան նախորդ երկու հնգամյակներում միասին վերցրած։ Գյուղատնտեսության մեջ էներգետիկ հզորությունները կաճեն 161 մլն ձիաուժով կամ 1,5 անգամ, տրակտորային պարկը՝ 540 հազար հատով կամ 27 տոկոսով։ Նշված և նախատեսվող այլ միջոցառումները հնարավորություն կտան հացահատիկի միջին արտադրությունը ամենաքիչը հասցնել մինչև 125, մսինը՝ ավելի քան 14, կաթինը՝ 92 մլն տոննայի։ Գյուղատնտեսական արտադրանքի տարեկան միջին աճը նախորդ հնգամյակի համեմատությամբ կավելանա 20—22 տոկոսով, որը հնարավորություն կընձեռի հիմնականում ապահովել ժողովրդական տնտեսության պահանջմունքները և դրանով իսկ բալանսավորել բնակչության արագ աճող գնողունակ պահանջարկը շուկայական համապատասխան ֆոնդերով։

Ընթացիկ հնգամյակում և առաջիկայում կարևոր նշանակություն է ստանում նաև ոչ-արտադրական ոլորտը։ Բավական է ասել, որ եթե 1940 թ. այդ բնագավառում աշխատում էր ժողովրդական տնտեսության մեջ բոլոր զբաղվածների 11,7 տոկոսը, ապա 1970-ին այն հասավ 22,5-ի, իսկ ընթացիկ հնգամյակում էլ ավելի կաճի։

Նշված բոլոր միջոցառումների կենսագործման շնորհիվ (բնակչության արագ աճող գնողունակ պահանջարկի և շուկայական ֆոնդերի միջև բալանսավորվածություն ստեղծելու նպատակով) ընթացիկ հնգամյակում հնարավորություն է ընձեռվում պլանավորել ապրանքաշրջանառության ավելի բարձր աճի տեմպեր, քան բնակչության դրամական եկամուտները։ Այսպես, եթե ՍՍՀՄ-ում պլանավորվում է բնակչության դրամական եկամուտներն ավելացնել 40 տոկոսով, ապա մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը՝ 42-ով, իսկ վճարովի ծառայությունների ծավալը՝ 47-ով։ Հայկական ՍՍՀ-ում մանրածախ ապրանքաշրջանառության ծավալն ընթացիկ հնգամյակում պլանավորված է ավելացնել 75 տոկոսով։ Դա անպայման բարենպաստ իրավիճակ կստեղծի բնակչության դրամական եկամուտների ռեալ բովանդակության բարձրացման համար, որը ժողովրդի բարեկեցության բարելավման կարևոր պայմաններից մեկն է։

# ԳԻՏԱԿԱՆՈՐԵՆ ՎԱՐԵԼ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

ՍԵԴԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու

Հայտնի է, որ XX դարը բնորոշվում է մտավոր աշխատանքների ծավալի և այն իրականացնողների թվի վիթխարի աճով։

ՍՍՀՄ-ում, 1970 թ. մարդահամարի տվյալներով, ժողովրդական տնտեսությունում զբաղվածների մեջ 5-ից մեկը մտավոր աշխատող է։ Այդպիսին է հարաբերակցությունը (մտավոր աշխատողների աննշան առավելությամբ) նաև մեր հանրապետությունում։ Ավելորդ է ապացուցել, որ աշխատողների այս հսկա բանակի գործունեության ռացիոնալ կազմակերպումը նույնքան կարևոր է, որքան ֆիզիկական աշխատանքով զբաղվածներինը։

Անհրաժեշտ է նշել, որ մեր երկրում մտավոր աշխատողների մոտ կեսն ընդգրկված է կառավարման ոլորտում, որոնց թիվը արտադրության ծավալի՝ մեծացման, մասնագիտացման խորացման, ինչպես նաև արտադրության կոմբինացման պրոցեսներին զուգընթաց ավելի է աճում։ Բացի այդ, գիտատեխնիկական առաջընթացի պայմաններում անհրաժեշտ է դառնում կառավարման ոլորտն ընդգրկել նաև բոլորովին նոր մասնագիտությունների տեր մարդկանց՝ էլեկտրոնիկների, տարբեր ուղղության մաթեմատիկոսների, տնտեսագետ կիբեռնետիկների և այլոց։

Կառավարումը ներառնում է մարդկային հարաբերությունների բավականին բարդ ոլորտը՝ հոգեբանական, տնտեսական, իրավաբանական և այլն։ Ուստի և դրա կատարելագործման մեթոդներն ու գործոնները խիստ բազմազան են։ Օրինակ, կոլեկտիվի աշխատանքի ռացիոնալ կազմակերպումը, աշխատանքային ոճի, տնտեսական շահագրգռվածության լծակների ճիշտ ընտրությունն ու բանիմաց օգտագործումը, պլանավորման և հաշվառման գործի խելացի կազմակերպումը, ղեկավարների ու ենթակաների միջև նորմալ փոխհարաբերությունների ստեղծումը և այլն։ Այստեղից պարզ է, որ կառավարման աշխատանքների բարելավումն ու կատարելագործումը չպետք է կրի էպիզոդիկ բնույթ. այն մշտապես հետազոտվող և անընդհատ կատարելագործվող պրոցես է։

Արտադրության զարգացման ու կատարելագործման, կենտրոնացման ու համակենտրոնացման շնորհիվ ընդլայնվում են ձեռնարկության մասշտաբները, ստեղծվում արտադրական խոշոր միավորումներ, կոմբինատներ. վերջիններս հագեցվում են ժամանակակից առաջավոր տեխնիկայով, արտադրական պրոցեսներն իրականացնելու նպատակով օգտագործվում են տեխնոլոգիական բարդ եղանակներ և այլն։ Փոխվում է նաև աշխատողների պրոֆեսիոնալ-որակական կազմը։ Արագ աճում է որակյալ աշխատուժը, դրան զուգահեռ նաև ին-

ժեներա-տեխնիկական աշխատողների թիվը: Այսպես օրինակ, 20 տարում (1950—1970 թթ.) Հայաստանի արդյունաբերության մեջ աշխատող բանվորների որակավորման միջին տարրակարգն ավելացել է մոտ 65 տոկոսով, ինժեներների ու տեխնիկների թիվը գրեթե կրկնապատկվել է: Նման տեղաշարժերը, բնականաբար, իրենց ազդեցությունն են թողնում արտադրության ղեկավարման կազմակերպման վրա: Նշված փոփոխություններին համապատասխան, հարկ է, որ անընդհատ կատարելագործվեն նաև արտադրության ղեկավարման սկզբունքներն ու մեթոդները: Յուրաքանչյուր ղեկավար պետք է քայլի ժամանակին համընթաց, գործը կազմակերպի գիտականորեն:

Սակայն, ցավոք, մինչև այժմ այս հարցին անբավարար ուշադրություն է նվիրվում: Գաղտնիք չէ, որ ձեռնարկության ղեկավարները (դիրեկտորները, գլխավոր ինժեներները, արտադրամասերի պետերը և ուրիշներ) իրենց աշխատանքում առնչվում են ոչ այնքան ֆիզիկայի, քիմիայի կամ մեխանիկայի, որքան աշխատողների գործունեությունը ղեկավարելու հետ, որի մասին շատ քիչ բան գիտեն: Մենք համեմատաբար լավ ենք ուսումնասիրել արտադրության նյութական կողմը, սովորել ենք արտադրության պրոցեսները կազմակերպելիս օգտագործել բնության ու տեխնիկայի օրենքները, մինչդեռ գրեթե չենք հետազոտել աշխատանքն իրականացնողին՝ մարդուն, նրա հոգեբանությունը, աշխատանքային պոտենցիալ հնարավորությունները և այլն (սոցիոլոգիան ներկայումս այս ուղղությամբ առաջին քայլերն է անում միայն): Հիշյալ բացը շատ ավելի սուր է արտահայտվում արտադրության կազմակերպման, ղեկավարման ոլորտում, ուր սոցիալ հոգեբանական գործոնի դերն ու ազդեցությունն առավել ակնբախ են:

Գաղտնիք չէ, որ մեր ձեռնարկությունների ղեկավարման սկզբունքներն ու աշխատանքային պրակտիկ մեթոդներն առ այսօր գիտականորեն չեն մշակվում ու չեն ուսուցանվում, որի հետևանքով ձեռնարկության ղեկավարները (ինչպես նաև մտավոր աշխատողների ճնշող մեծամասնությունը), չգիտեն ու չեն կիրառում գիտականորեն մշակված և փորձով արդարացված աշխատանքային մեթոդներ, գործում են առանց հիմնավորված և ընդհանուր ճանաչում գտած սիստեմի. այն որոշ չափով մշակվում է տվյալ անհատի երկարամյա աշխատանքային փորձով, յուրաքանչյուր ղեկավար իր համար մեթոդներ է ընտրում՝ ելնելով անձնական ունակություններից և ղեկավարման գործում ունեցած սեփական պատկերացումներից (նրան չի հաղորդվում նույնիսկ այդ ուղղությամբ կուտակված պրակտիկ փորձը): Այնուհետև, չի ստուգվում նաև այն, թե արդյո՞ք բավարար են դրանք մեծ կոլեկտիվի աշխատանքը ղեկավարելու և արտադրությունը բարձր արդյունավետությամբ կազմակերպելու համար: Իրավիճակը հաճախ ի հայտ է գալիս աշխատանքային մի քանի տարիներից հետո միայն, երբ բացահայտվում է, որ ձեռնարկությունն ապաշնորհ ղեկավարության պատճառով ձախողել է իր առջև դրված խնդիրների կատարումը, շռայլել նյութական, ֆինանսական զգալի միջոցներ, առիթ տվել բանվորական ուժի մեծ հոսունության և այլն: Այսպես օրինակ, Երևանի № 1 կարի ֆաբրիկան տարիներ շարունակ ոչ միայն չի կատարել պետական պլանային առաջադրանքները, այլև մեծ չափով ավելացրել է անորակ արտադրանքը: Վատ աշխատանքի հետևանքով ֆաբրիկան ստիպված էր համապատասխան կազմակերպություններին մուծել մեծ գումարի հասնող տուգանքներ: Երբ ժողովրդական տնտեսությանը տված վնասը հասավ անհանդուրժելի չափերի, այդ ժամանակ միայն արտադրության ղեկավարները (դիրեկտորը,



գլխավոր ինժեները, դիրեկտորի տեղակալը) որակվեցին որպես անընդունակ կազմակերպիչներ և ազատվեցին աշխատանքից: Կիրովականի Կամոյի անվան տրիկոտաժի ֆաբրիկայի ղեկավարների ոչ բանիմաց աշխատանքի հետևանքով միայն 1972 թ. ֆաբրիկան վճարել է 250 հազար ռուբլու տուգանք, տվել 282 հազար ռուբլու աշխատավարձի գերածախս. այս ամենից հետո է միայն փոխվել այդ ձեռնարկության ղեկավարությունը: Լենինականի գուլպայի ֆաբրիկայի նախկին ղեկավարության վատ աշխատանքի հետևանքով 1973 թ. ձեռնարկությունն ունեցել է մեծ չափերի հասնող անարտադրողական ծախսեր (որի 55 տոկոսն առաջացել է առևտրական կազմակերպությունների կողմից վերադարձված ապրանքների խոտանը վերացնելուց, իսկ 30 տոկոսը՝ առանձնած պայմանագրային պարտավորությունները խախտելու համար տույժեր ու տուգանքներ մուծելուց):

Վերջին տասը տարիների ընթացքում Երևանի նուրբ բրդյա գործվածքների կոմբինատում փոխվել են երեք դիրեկտորներ և նույնքան էլ գլխավոր ինժեներներ ու արտադրության պետեր, սակայն դրությունն անփոփոխ է: ՀԿԿ Երևանի կազմակերպության XXXIV կոնֆերանսում նշվեց, որ միայն վերջերս Երևանի քաղկոմի և շրջկոմների միջոցով աշխատանքները պատշաճ ձևով չկազմակերպելու, պետական ու ֆինանսական կարգապահության խախտումներ թույլ տալու համար աշխատանքից ազատվել և կուսակցական խիստ պատասխանատվության են ենթարկվել հիմնարկ-ձեռնարկությունների 135 ղեկավարներ:

Սակայն պետք է խոստովանել, որ ձեռնարկությունների ղեկավար կադրերի սոսկ փոփոխմամբ արտադրության կառավարման բարդ խնդիրները հաճախ չեն լուծվում: Դրա համար կազմակերպչական վերոհիշյալ միջոցառումներից բացի, անհրաժեշտ է համակողմանի կատարելագործել այդ աշխատանքները:

Պրակտիկան ցույց է տալիս, որ ձեռնարկության ղեկավար աշխատողների միայն մասնագիտական բարձր որակավորումը չէ այդ աշխատանքների հաջող վարման գրավականը: Թեպետ ՀՍՍՀ արդյունաբերության բնագավառի ղեկավար աշխատողների 93,7, շինարարության՝ 82,7 տոկոսն ունեն բարձրագույն կրթություն, կոլտնտեսությունների նախագահների 60,2 և սովխոզների դիրեկտորների 80,7 տոկոսը բարձր որակավորում ունեցող մասնագետներ են, այնուամենայնիվ, հանրապետության արդյունաբերական արտադրանքի աճի միայն կեսն է ստացվել արտադրողականության բարձրացման հաշվին՝ նախատեսված $^{2}/_{3}$-ի փոխարեն: Անբավարար է ֆոնդահատույցի մակարդակը, բարձր է արտադրանքի ինքնարժեքը, ցածր՝ որակը: Ֆոնդահատույցը միայն մեկ տարում (1972—1973 թթ.) իջել է մոտ 20 տոկոսով (1 ռ. 79 կոպ.-ից՝ 1 ռ. 47 կոպ.): Պետստանդարտի հայկական հանրապետական վարչության որակի տեսչության կողմից 1973 թ. ստուգված 249 ձեռնարկություններից 204-ում հայտնաբերվել են սահմանված ստանդարտի ու տեխնիկական պայմանների կոպիտ խախտումներ (776 տեսակի արտադրանքներից 572-ը չեն համապատասխանում պետական ստանդարտին): Կան ձեռնարկություններ, որոնք տարիներ շարունակ ոչ միայն չեն առաջադիմում, այլ նահանջում են իրենց իսկ նվաճած բնագծերից: Այսպես, օրինակ, 1972 թ. համախառն արտադրանքի թողարկումը ձեռք բերված մակարդակից ցածր պլանավորվեց 60, իսկ 1973 թ.՝ 65 ձեռնարկություններում (կամ Երևանի արդյունաբերական ձեռնարկությունների $^{1}/_{3}$-ում). գումարային արտահայտությամբ դա նշանակում է ավելի քան 43,5 մլն ռուբլու արտադրանքի նվազեցում: «Պոլիվինիլացետատ» գործարանի ար-

տադրանքն այսօր, 1972 թ. համեմատությամբ, պակասել է 8,4 տոկոսով, իսկ ավտոդողերի գործարանի տեխնիկատնտեսական ցուցանիշները 1973 թ. ցածր էին 1970 թ. փաստացի մակարդակից: (Այս տվյալները վերցված են ՀԿԿ Երևանի կազմակերպության XXXIV կոնֆերանսի նյութերից): Պլանային առաջադրանքները սիստեմատիկաբար ձախողում են այնպիսի խոշոր, նոր տեխնիկայով, միջոցներով ու մասնագիտական կադրերով հագեցված ձեռնարկություններ, ինչպիսիք են՝ Երևանի նուրբ բրդյա գործվածքների, Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատները, «Պոլիվինիլացետատ», ավտոդողերի, Լենինականի հղկող հաստոցների գործարանները, «Հայքիմկենցաղ» միավորումը և այլն: Ընդ որում ձեռնարկությունում ղեկավար կադրերի առատությունը ևս էապես չի փոխում նշված իրավիճակը: Այսպես, Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանում աշխատում էին մեկ դիրեկտոր՝ երեք տեղակալներով, դիրեկտորի մեկ օգնական (դիրեկտորի տեղակալի իրավունքներով): 400 բանվոր ունեցող այս գործարանի ղեկավարների թիվը հասնում էր մոտ 220-ի (յուրաքանչյուր երկու բանվորին ընկնում էին մեկից ավելի ղեկավար-պլանային ու հաշվային աշխատողներ): Չնայած դրան, գործերն այստեղ նույնպես բարեհաջող չէին: Գործարանը չէր կատարել այս հնգամյակի երեք տարիների առաջադրանքները:

Չունենալով արտադրությունը ղեկավարելու անհրաժեշտ պատրաստականություն, գիտելիքներ ու փորձ, ձեռնարկության որոշ ղեկավարներ ձգտում են ապացուցել, թե իրենց գլխավոր անելիքը պետական պլանային առաջադրանքների կատարումն է (այդ են պահանջում վերադաս կազմակերպությունները), իսկ թե ինչ ճանապարհով կամ աշխատանքային ինչպիսի ծախսումների գնով՝ կարևոր չէ: Այդպիսի ղեկավարը չի կարողանում լայնորեն օգտագործել գիտության ու տեխնիկայի նորույթները, բացահայտել արտադրության ռեզերվները և դրանց օգտագործմամբ հասնել արտադրա-տնտեսական ցուցանիշների բարելավմանը, դրա համար էլ ձեռնարկության ղեկավարների մի մասը ջանում է պլանային առաջադրանքները կատարել արտադրության քանակական գործոնի հաշվին կամ զանազան ապօրինի միջոցներով: Այստեղից՝ աշխատանքային, ֆինանսական ու կարգապահական խախտումներ (հարկավոր է պլանը կատարել ամեն գնով), ղեկավարման անձնական մեթոդներն արդարացնելու և կիրառելու նպատակով՝ պաշտոնական դիրքի չարաշահում, բանիմաց և ճկուն ղեկավարման փոխարեն՝ վարչարարություն, աչքակապություն ձգտում և այլն: Այսպես, օրինակ, 1973 թ. նոյեմբեր-դեկտեմբեր ամիսներին հանրապետության ժողովրդական վերահսկողության կոմիտեի ստուգումներից պարզվել է, որ ստուգման ենթարկված ձեռնարկությունների $^1/_3$-ում հաշվետվություններում կատարված գրանցումները եղել են ոչ ստույգ: Երևանի էլեկտրատեխնիկական գործարանի արտադրամասերի առանձին պետեր տարիներ շարունակ զբաղվել են աչքակապությամբ, չարաշահել իրենց պաշտոնական դիրքը, կատարել տեխնիկա-տնտեսական մի շարք ցուցանիշների ու կարգագրերի կեղծումներ: (Տե՛ս ՀԿԿ Երևանի կազմակերպության XXXIV կոնֆերանսի նյութերը):

Լենինականի հղկող հաստոցների գործարանի նախկին ղեկավարությունը, ինչպես նշվեց ՀԿԿ Լենինականի կազմակերպության վերջին կոնֆերանսում, պետական պլանային առաջադրանքները կատարելու փոխարեն, զբաղվել է աչքակապությամբ, համախառն արտադրանքի վրա հավելագրելով 746 հազար ռուբլի (որն, ի դեպ, հավասար է ձեռնարկության մեկամսյա արտադրանքի ծավալին):

Առանձին ղեկավար աշխատողներ, չտիրապետելով կառավարման մեթոդ-



ներին, խիստ անարդյունավետ են ծախսում իրենց ժամանակը, վատնում բավականին մեծ էներգիա, որը չի փոխհատուցվում ընդհանուր արդյունքներով: Բազմաթիվ ձեռնարկություններում կարելի է հանդիպել գործերի վարման քաշքշուկի, բաժնից-բաժին, առանձնասենյակից-առանձնասենյակ չարդարացված վազվզուկի, ղեկավարների առանձնասենյակների մոտ իրենց հարցերի պատասխանին սպասող շատ աշխատողների, հաճախ անօգուտ նիստերի ու ժողովների (որոնց մեծ մասի օրակարգը նախապատրաստվում է հապճեպ, և մասնակիցները պատրաստ չեն լինում հարցերի լուրջ քննարկմանը). այդ ամենը ժամանակի խոշոր կորուստների առիթ է դառնում: Այսպես, 1973 թ. մայիսին Երևանի ավտոպահեստամասերի գործարանի, «Արագած» գործվածքային, տրիկոտաժի № 1 ֆաբրիկաների և նուրբ բրդյա գործվածքների կոմբինատի ղեկավարների հետ ունեցած մեր հարցազրույցից պարզվեց, որ ձեռնարկության դիրեկտորները որպես կանոն աշխատում են 9—10, գլխավոր ինժեներները, միջին հաշվով՝ 9,5, արտադրամասի պետերը՝ 10—11 ժամ: Եվ, որ հատկանշական է, հիշյալ աշխատողների մեծամասնությունը տուն է դառնում օրվա գործերը լրիվ չավարտած: Նման փաստերը հատուկ են ոչ միայն մեր հանրապետությանը: Խարկովի պետական համալսարանի սոցիոլոգների կազմած հարցաթերթիկին մեքենաշինության 1.235 ղեկավարների պատասխաններից պարզվել է, որ նրանք բոլորն էլ աշխատում են 9 ժամ և ավելի: Արտադրամասերի ու բաժինների պետերի 22 տոկոսը մշտապես ավելի է աշխատում 1, 36 տոկոսը՝ 2, իսկ յուրաքանչյուր 10-ից մեկը՝ 4—5 ժամ: Ժամանակի նման մեծ կորուստները հետևանք են նաև ժողովների, խորհրդակցությունների ու նիստերի առատության, որտեղ ձեռնարկության ղեկավարությունը լայն հնարավորություններ ունի տնտեսական ու կազմակերպչական անմիջական ղեկավարությունը փոխարինելու կարգադրությունների ու որոշումների ընդունմամբ: Հանրապետության թեթև արդյունաբերության երկու խոշոր ձեռնարկությունների՝ տրիկոտաժի № 1 ֆաբրիկայի և նուրբ բրդյա գործվածքների կոմբինատի՝ 1973 թ. ապրիլին կայացած ժողովների, խորհրդակցությունների ու նիստերի արձանագրությունների ուսումնասիրությունը ցույց տվեց, որ այդ ձեռնարկություններից յուրաքանչյուրում շաբաթական գումարվել է 4—6 նիստ, ընդ որում, այդ նիստերում ու խորհրդակցություններում միաժամանակ ընդունվել են կոնկրետությունից զուրկ, հետևաբար ոչնչով չպարտավորեցնող և գործնական նշանակություն չունեցող որոշումներ (օրինակ, բարձրացնել արտադրանքի որակը և աշխատանքի արտադրողականությունը, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը, կանխել աշխատուժի հոսունությունը և այլն): Հասկանալի է, որ առավել արդյունավետ կլիներ, եթե այդ նիստերի ու խորհրդակցությունների ժամանակը տրամադրվեր արտադրության հրատապ խնդիրների պրակտիկ լուծմանը: Կասկածից վեր է, որ եթե ձեռնարկության ղեկավարությունն անկարող է ռացիոնալ օգտագործել իր աշխատաժամանակը՝ առավել ևս անկարող է արդյունավետ կազմակերպել իր ենթակաների գործունեությունը: Այդ է պատճառը, որ մեր ձեռնարկություններում հաճախ դիմում են արտաժամյա աշխատանքի: Թեթև արդյունաբերության ձեռնարկությունների մեծ մասի աշխատաժամանակի ընդհանուր ֆոնդում (ոչ լրիվ հաշվարկներով) այն հասնում է մոտ 1,2, շինանյութերի արդյունաբերության առանձին ձեռնարկություններում՝ 5 տոկոսի, մինչդեռ չնախատեսված պարապուրդները նշված ձեռնարկություններում կազմում են 1,5—3 տոկոս: Դեղագործական գործարանի յուրաքանչյուր աշխատողի պարապուրդը 1973 թ. կազմել է շաբաթական 6—7 ժամ, այսինքն՝ մեկ լրիվ հերթափոխ:

Հարցն այն է, որ արտադրության ղեկավարման ռացիոնալ մեթոդների ու սկզբունքների մշակման պրոբլեմը չի արժանացել մեր գիտնականների, տնտեսագետների, փիլիսոփաների, իրավաբանների, սոցիոլոգների, հոգեբանների և այլոց պատշաճ ուշադրությանը: Այդ իսկ պատճառով, ներկայումս նրանք

տալիս են միայն ընդհանուր բնույթի խորհուրդներ ու հանձնարարականներ, որոնք պրակտիկ աշխատանքում քիչ կիրառելի են։

Նման վիճակը պատահական չէ. այն ունի իր պատճառները։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո մեր պետության առջև ծագեց դժվարին մի խնդիր՝ տնտեսությունը ղեկավարել սովորեցնել բանվորին ու գյուղացուն, որոնք դեռ աշխատում էին հաստոցի վրա ու մշակում հողը և նույնիսկ բավարար չափով գրագետ չէին։ Հապճեպ, ինչպես պահանջում էին այն ժամանակվա տեմպերը (2—3 տարում), ապագա ղեկավարը կարողացավ դառնալ գրաճանաչ, ծանոթացավ գիտության տարրական հիմունքներին, ընդ որում այն դրեթե միշտ զուգակցելով արտադրության մեջ աշխատելու և սոցիալիզմի հաղթանակի համար մղվող պայքարի հետ։ Հասկանալի է, որ նման լարված պայմաններում ժամանակը չէր բավականացնում ղեկավարման մեթոդների պատշաճ ուսումնասիրման համար։ Բացի այդ, երկրում ստեղծված դրությունը (պատերազմ, սով, տնտեսության քայքայվածություն, նախորդ սերնդի փորձի բացակայություն և այլն) չէր նպաստում այդ ուղղությամբ լուրջ հետազոտությունների անցկացմանը։ Այսպիսով, տվյալ ժամանակաշրջանի աշխատանքային հսկայական տեմպերը, խիստ ծանրաբեռնվածությունը հնարավորություն չէին ընձեռում կատարելագործելու ձեռնարկության ղեկավարման մեթոդները և, պատահական չէր, որ այդ շրջանում ավելի հաճախ էին կիրառվում ղեկավարման կամայական մեթոդներ, տարածում էր գտել վարչարարությունը, հրամաններով ու կարգադրություններով օբյեկտիվ պրոցեսներին ուղղություն տալու ձգտումը և այլն։ Հիշենք, որ ՍՄԿԿ ԿԿ-ի 1965 թ. պլենումը խիստ քննադատեց ղեկավարման նման մեթոդները, համարեց այն արատավոր և ցույց տվեց, թե ներկա պայմաններում որքան կարևոր է ղեկավարման գործի գիտական կազմակերպումը։ Այդ մասին պարզորոշ նշված է նաև ՍՄԿԿ XXIII և XXIV համագումարների որոշումներում։ Այս հարցին բազմիցս անդրադարձել են ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը, կուսակցության ու կառավարության ղեկավարները, երկրի գիտնականները։

Վերջին տարիներին այս բնագավառում որոշ գործ արվել է։ Երկրի մի քանի բարձրագույն ուսումնական հաստատություններին կից ստեղծվել են արդյունաբերության կառավարման մեթոդներն ուսումնասիրող դպրոցներ, գործում են արտադրության ղեկավար կադրերի որակավորման բարձրացման դասընթացներ։ Սակայն հիշյալ ձեռնարկումները փորձնական փուլում են, և այստեղ ավելի հաճախ ուշադրություն է նվիրվում ունկնդիրների մասնագիտական գիտելիքների հարստացմանը, քան արտադրության ղեկավարման ու մարդկանց հետ աշխատելու մեթոդների ուսուցմանը։

Ձեռնարկության ղեկավարման գիտական հիմունքների ու մեթոդների մշակումն ընդգրկում է շատ լայն շրջանակներ։ Առաջին հերթին անհրաժեշտ է գիտականորեն կիրառել ժողտնտեսության պլաններն ամբողջությամբ։ Է՛լ ավելի ռացիոնալացնել այն հիմնարկությունների ու կազմակերպությունների աշխատանքը, որոնց գործունեությունը ուղղակի կամ անուղղակի ազդում է արտադրության ներքին օղակի՝ ձեռնարկության աշխատանքների վրա։ Դրանում համոզվելու համար բերենք մի օրինակ. այսպես, 1973 թ. ՍՍՀՄ ԳԱ Սիբիրի բաժանմունքի աշխատակիցները հարցաթերթիկով դիմեցին Հեռավոր Արևելքի խոշոր ձեռնարկությունների 1.064 դիրեկտորների՝ նրանց աշխատանքային դժվարությունները բացահայտելու նպատակով։ Պատասխանողների 44 տոկոսը գլխավոր դժվարություններից մեկը համարում է նյութատեխնիկական ոչ հստակ մատակարարումը, 27-ը՝ պլանավորման մեջ կամայականու-



թյունը և պլանների անկայունությունը, 26-ը՝ դիրեկտորների իրավունքների սահմանափակությունը, 14-ը՝ աշխատավարձի կազմակերպման գործում եղած թերությունները և այլն (տե՛ս «Պրավդա», 19 նոյեմբերի 1973 թ.)։ Նշված փաստերը վկայում են, որ ձեռնարկության ղեկավարման աշխատանքի գիտական կազմակերպման պրոբլեմն առնչվում է բազմաթիվ այլ աշխատանքների գիտական կազմակերպման անհրաժեշտության հետ, և դրա լիարժեք լուծումը հնարավոր է միայն հարցերի կոմպլեքսային մշակմամբ։

Անհրաժեշտ է նաև խորապես ուսումնասիրել արտադրության կառավարման գործում ՍՍՀՄ-ում կուտակված փորձի ողջ դրականը, ինչպես և սոցիալիստական ձեռնարկությունների ճանաչում գտած ղեկավարների կողմից մշակված աշխատանքային պրակտիկ մեթոդները։ Դա բավականին կօգնի ղեկավարման ռացիոնալ մեթոդների հետագա մշակմանը։

Ժամանակն է նաև մեր երկրի բուհերում կազմակերպելու արտադրության ղեկավարման և կոլեկտիվի հետ աշխատելու ընդհանուր հիմունքների ու մեթոդների ուսուցման գործը, որպեսզի արտադրության ամենաներքին օղակի կազմակերպիչ-մասնագետը, զինված լինի մարդկանց հետ աշխատելու թեկուզ նվազագույն, սակայն խիստ անհրաժեշտ գիտելիքներով։ Փաստ է, որ մեքենագրուհին կամ վարորդը մինչև մասնագիտական որակավորում չեն ստանում, մեքենան նրանց չի վստահվում։ Մինչդեռ մի ամբողջ արտադրության ու նրա կոլեկտիվի բարդ ու պատասխանատու աշխատանքի ղեկավարումը (որն այնքա՜ն տարբերվում է մեքենայի ղեկավարումից), հանձնարարվում է մարդկանց, որոնք լուրջ մասնագետներ լինելով հանդերձ՝ չեն տիրապետում կոլեկտիվի աշխատանքը կազմակերպելու և արտադրությունը ղեկավարելու տարրական գիտելիքներին։ Մեր կարծիքով, ժամանակն է նաև բուհերում ապագա մասնագետներին արտադրության ղեկավարման ու կոլեկտիվի հետ աշխատելու ընդհանուր հիմունքներին ծանոթացնելուց բացի, ստեղծել ուսուցման հատուկ ցանց (օրինակ, արտադրության ղեկավարման հիմունքներն ուսումնասիրող դպրոցներ), ուր կընդունվեն և իրենց գիտելիքները կհարստացնեն բուհն ավարտած, աշխատանքային փորձ ձեռք բերած մասնագետները, որոնք օժտված են ղեկավարի հատուկ ունակություններով։ Այդպիսի դպրոցներում կարելի է ուսուցանել ինչպես արտադրության ճանաչված ղեկավարների ընդհանրացված փորձը, այնպես էլ այդ բնագավառում եղած գիտական նորույթները։

Երկու—երեք տարում հիշյալ դպրոցներն ավարտած մասնագետները ձեռք կբերեն ևս մեկ՝ ձեռնարկության (կամ նրա առանձին օղակների) ղեկավարման մասնագիտությունը, որը և իրավունք կտա նրանց վստահորեն կանգնելու ձեռնարկության կառավարման ղեկի մոտ։

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՈՐՈՇՄԱՆ ՆԵՐԳՈՐԾՈՒՆՈՒԹՅՈՒՆԸ

Խ. Մ. ՎԱԹԻՆՅԱՆ
ՀԿԿ Դիլիջանի քաղկոմի առաջին քարտուղար

Կուսակցական աշխատանքի հաջողության վճռական պայմաններից մեկը ճիշտ ու հիմնավորված որոշումներ ընդունելն է: Կուսկազմակերպության մարտունակության աստիճանը կարելի է որոշել և գործունեությունը գնահատել դրանց կենսագործման ու ներգործունության մակարդակով: Կուսակցական որոշման ներգործունությունը մեծապես պայմանավորված է դրա որակով, շոշափված հարցերի հրատապությամբ ու կարևորությամբ:

Կուսկազմակերպության բյուրոյի նիստի և կուսժողովի հրավիրումն ու անցկացումը ինքնանպատակ չեն: Կոմունիստները հիմնականում հավաքվում են, որպեսզի համատեղ քննարկեն կազմակերպության համար կենսական ու առավել կարևոր նշանակություն ունեցող այս կամ այն հարցը և դրա լուծման համար մշակեն անհրաժեշտ միջոցառումներ: Սակայն որոշման ներգործունության ապահովման համար, անշուշտ, բավական չեն տվյալ հարցի բարձր մակարդակով քննարկումը և միջոցառումների մշակումը: Փորձը ցույց է տալիս, որ կարելի է ընդունել գործնական որոշում, նշել դրա կատարման ժամկետները, սակայն, այնուամենայնիվ, այն կմնա թղթի վրա, եթե չձեռնարկվի անհրաժեշտ կազմակերպական աշխատանք: Ուստի, որոշման կատարման նկատմամբ պետք է սահմանել մշտական հսկողություն, այդ գործում բարձրացնել բոլոր կոմունիստների, ողջ կազմակերպության պատասխանատվությունը, զարգացնել յուրաքանչյուր կոմունիստի նախաձեռնությունն ու ստեղծագործական ակտիվությունը:

ՀԿԿ Դիլիջանի քաղաքային կոմիտեն հատուկ ուշադրություն է նվիրում ինչպես սեփական, այնպես էլ վերադաս կազմակերպությունների որոշումների կատարմանը: Որոշումների կենսագործման կազմակերպումն ու դրա նկատմամբ հսկողությունը մեզ մոտ դրված են բավարար հիմքերի վրա: Կուսբաղկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները բազմիցս անդրադարձել են հնգամյակի որոշիչ տարվա տնտեսական խնդիրներին, ընդունել համապատասխան որոշումներ: Քաղաքի աշխատավորական կոլեկտիվներն ու սկզբնական կուսկազմակերպությունները դրանց կատարումը համարում են իրենց պարտքն ու պարտականությունը: Ջերմորեն արձագանքելով ՍՄԿԿ Կենտկոմի՝ կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղած դիմումին, ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի՝ «1974 թվականի ժողովրդատնտեսական պլանը ժամկետից շուտ կատարելու համար արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցության մասին» որոշմանը, նրանք ձգտում են հաջողությամբ ավարտել հնգամյակի որոշիչ տարին: Դրա վկայությունն առաջին կիսամյակի արդյունքներն են. քաղաքի արդյունաբերական



ձեռնարկությունները, ամբողջությամբ վերցրած, համախառն արտադրանքի պլանը կատարեցին 103, իրացմանը՝ 102 տոկոսով: Անցած տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ արտադրանքի թողարկումն աճեց 23, իրացումը՝ 28,8, աշխատանքի արտադրողականությունը՝ 13,6 տոկոսով:

Հայրենանվեր այդ մեծ պայքարը կազմակերպում և գլխավորում են կուսակցության քաղաքային կոմիտեն, սկզբնական կուսկազմակերպությունները, որոնք իրենց որոշումներով մոբիլիզացնում են ինչպես կոմունիստների, այնպես էլ բոլոր աշխատավորների ուժերը՝ սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորություններն անթերի կատարելու, արտադրության արդյունավետությունը բարձրացնելու, արտադրանքի որակը բարելավելու, գիտա-տեխնիկական նորություններն արտադրության մեջ արմատավորելու համար:

Որոշումները ներգործություն են ունենում միայն այն դեպքում, երբ դրանք գործնական են: Կուսկոմիտեն ղեկավարվում է հենց այս սկզբունքով: Մեր աշխատանքային պրակտիկան ցույց է տվել, որ որոշումը կարող է գործնական բնույթ կրել, եթե վաղօրոք հանգամանորեն ուսումնասիրվի այն խնդիրը, որի լուծման համար միջոցառումներ են մշակվելու: Այսպես, մակերեսային ուսումնասիրությունը կարող է հանգեցնել ձևական որոշման, որպիսին և ոչ մեկին հարկավոր չէ: Այսպիսով, հարցերի բազմակողմանի նախապատրաստությունն ու քննարկումը հնարավորություն են ընձեռում ընդունել կոնկրետ և գործնական որոշում, որը դառնում է կուսկազմակերպության, կոմունիստների գործողության ծրագիրը:

Հարցի քննարկումն ու համապատասխան որոշում ընդունելը բխում են արտադրության ու կազմակերպության շահերից, նպաստում տնտեսական ու կուսակցական աշխատանքի բարելավմանը: Նշենք մի օրինակ: Կենցաղային սպասարկման կոմբինատը տարիներ շարունակ թերակատարում էր պետական առաջադրանքները: Իսկ այս հանգամանքը չէր կարող իր վրա չբևեռել կուսբաղկոմի ուշադրությունը: Ուսումնասիրեցինք կոմբինատի հետ մնալու պատճառները: Պարզվեց, որ այստեղ վատ է կազմակերպվում նյութերի մատակարարումը, ցածր է աշխատանքային կարգապահությունը, որոշ ղեկավար կադրեր չեն գտնվում իրենց կոչման բարձրության վրա, լավ չեն պատկերացնում իրենց խնդիրները:

Հարցը նախապատրաստվեց և մտցվեց կուսբաղկոմի բյուրոյի քննարկմանը: Բյուրոն ընդունեց համապատասխան որոշում: Պաշտոնից ազատվեցին իրենց չարդարացնող ղեկավարները: Աշխատանքները բարելավելու նպատակով հարց բարձրացվեց հանրապետության բնակչության կենցաղսպասարկման մինիստրության առջև՝ անհրաժեշտ օգնություն ցույց տալ կոմբինատին, անխափան կերպով ապահովել նրան նյութերով: Հանձնարարվեց կուսկազմակերպությանը՝ մոբիլիզացնել կոլեկտիվի ու կոմունիստների ուժերը և կարճ ժամանակում կենսագործել այն բոլոր միջոցառումները, որոնք մշակվել են քաղկոմի բյուրոյի կողմից: Որոշումներից հետո վիճակը նկատելիորեն փոխվեց:

Կոմբինատի նոր ղեկավարությունը և կուսկազմակերպության բյուրոն, ելնելով այդ որոշումից, բարելավեցին նյութերի մատակարարումը, ամրապնդեցին աշխատանքային կարգապահությունը, բարձրացրին կոմունիստների ավանգարդային դերը: Աստիճանաբար բարելավվեց գործերի վիճակը, կատարվեցին պլանային առաջադրանքները և սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունները: Այժմ կոմբինատն ընթանում է քաղաքի առաջավոր ձեռնարկությունների շարքում: Հենց այս փաստը վկայում է, որ որոշումների կատարման ապահովումը տվյալ կազմակերպության աշխատանքի հաջողության գրավականն է:

Սակայն պետք է խոստովանել, որ, ցավոք, դեռ ոչ բոլոր կուսկազմակերպություններն են խորությամբ ըմբռնում խնդրի կարևորությունը, կամ անհրաժեշտ եզրակացություն հանում ընդունված որոշումներից: Ոմանք անտեսում, իսկ ոմանք էլ թերի են կատարում դրանք: Այստեղ է, որ վերադաս կազմակերպությունը պետք է հետևողականություն հանդես բերի իր ընդունած որոշման կենսագործման հարցում: Քաղաքի № 1 շինվարչության կոլեկտիվը

սիստեմատիկաբար թերակատարում էր պլանային առաջադրանքները, ժամանակին շահագործման չէր հանձնում օբյեկտները, ռացիոնալ չէր օգտագործում մեքենաներն ու սարքավորումները։ Այստեղ նկատվում էին նաև ցածրորակ աշխատանքի փաստեր։ Նման թերությունները վերացնելու նպատակով 1973 թ. ընթացքում քաղկոմի բյուրոն ընդունել էր մի շարք որոշումներ։ Սակայն վարչության ղեկավարությունը և կուսկազմակերպությունը լրջորեն հոգ չէին տարել դրանք կատարելու մասին։ Մի շարք զգուշացումներից և նկատողություններից հետո էլ գործը տեղից չէր շարժվում։ Քաղկոմի բյուրոն 1974 թ. փետրվարի 22-ին նորից անդրադարձավ այդ առթիվ ընդունած որոշումների կատարմանը. շեշտը դրվեց շահագործման ենթակա օբյեկտների շինարարության վիճակի վրա։ Բյուրոյի նիստում ելույթներով հանդես եկան գործին անմիջականորեն առնչվող մարդիկ՝ կառուցող և պատվիրատու կազմակերպությունների պատասխանատու ընկերներ։

Կուսքաղկոմի բյուրոն խստորեն դատապարտեց № 12 շինտրեստի և № 1 շինվարչության ղեկավարների անպատասխանատու վերաբերմունքը բյուրոյի որոշման կատարման նկատմամբ, նշեց կուսկազմակերպության անբավարար աշխատանքը և մեղավորներին ենթարկեց կուսակցական տույժերի, աշխատանքից ազատեց վարչության պետ Մ. Պետրոսյանին։ Բյուրոն միաժամանակ նոր միջոցառումներ մշակեց՝ նշված օբյեկտների շինարարությունն արագացնելու և դրանք նախատեսված ժամկետներում շահագործման հանձնելու համար։ Շատ չանցած, լուրջ բեկում մտցվեց շինվարչության գործունեության մեջ. պլանները սկսեցին կատարվել։ Այս անգամ էլ քաղաքային կոմիտեն առաջնորդվեց այն կարևոր սկզբունքով, որ որոշումներն ու հանձնարարությունները չկատարելը կամ այդ գործում թերանալը չի կարելի հանդուրժել։ Նման դեպքում պետք է դրսևորվի համապատասխան վերաբերմունք։

Հետևողականությունը և պահանջկոտությունը կարևոր նախապայման են որոշումների անթերի կատարման համար։ Կուսքաղկոմի կողմից որոշումների կատարման ընթացքին պարբերաբար անդրադառնալը դարձել է հաստատուն կարգ։ Չէ՞ որ այս կամ այն հարցի առթիվ ընդունած որոշման մեջ համապատասխան կազմակերպություններին տրվում են կոնկրետ հանձնարարություններ, սահմանվում են ժամկետներ՝ վերացնելու աշխատանքում տեղ գտած թերությունները։ Եվ այդ ժամկետն անցնելուց հետո անհրաժեշտ է վերստին անդրադառնալ տվյալ հարցին, որը, անշուշտ, բարձրացնում է որոշումների հեղինակությունը և մարդկանց պատասխանատվությունը դրանց կատարման համար։ Օրինակ, վերջին երեք տարվա ընթացքում կուսքաղկոմը մի քանի անգամ անդրադարձել է սոցմրցության կազմակերպման հարցերին։ Բանն այն է, որ առաջներում մրցությունը ծավալվում էր միայն առանձին կոլեկտիվների շրջանում, բացակայում էր միջարտադրամասային, միջբրիգադային և անհատական մրցությունը։ Կոլեկտիվի անդամները հստակ չէին պատկերացնում իրենց խնդիրներն ու անելիքները, մինչդեռ դրանց կենսագործումը պահանջում էր, որ յուրաքանչյուր աշխատող, կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ հստակ պատկերացնի ոչ միայն ամսվա, շաբաթվա, այլև յուրաքանչյուր օրվա իր անելիքը, առաջադրանքն ու դրա կատարման նպատակը։ Այս տեսակետից բավական լավ փորձ է կուտակել «Իմպուլս» գործարանի սկզբնական կուսկազմակերպությունը, որն իր առաջնահերթ խնդիրը համարեց վերացնել աշխատանքում տեղ գտած թերությունները, արդյունավետ կազմակերպել սոցմրցությունը։ Կուսբյուրոն դիմեց մի շարք գործնական քայլերի. աչքի ընկնող տեղերում փակցրեց կոլեկտիվի սոցպարտավորությունների տեքստը, ստեղծվեցին վահանակներ ու դիագրամներ, որոնք պատմում էին կոլեկտիվի խնդիրների ու գործունեության արդյունքների մասին։ Առանձնահատուկ ուշադրություն նվիրվեց արտադրանքի որակի բարձրացմանը։ Կոլեկտիվի անդամներին կոչ արվեց՝ աշխատել «Տալ ավելի շատ, ավելի քիչ ծախսումներով բարձրորակ արտադրանք» նշանաբանով։

Մրցությունը բորբոքելու գործում լուրջ դեր խաղացին գործարանի ռադիոհանգույցը, ագիտատորներն ու քաղինֆորմատորները։ Ռադիոյով հաճախակի



հաղորդվում էր տրվում այս կամ այն արտադրամասի, տեղամասի աշխատանքի մասին, դրվատվում էին մրցության հաղթողները։ Ձեռնարկության դիրեկցիան, կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները չէին անտեսում նաև նյութական և բարոյական խրախուսման ձևերը։ Այս ամենն իր դրական ազդեցությունը թողեց ոչ միայն պլանային առաջադրանքների կատարման, այլև արտադրանքի որակի բարձրացման վրա։ Այդ մասին է վկայում այն, որ վերջին տարիներին գործարանը սպառողներից բողոքներ չի ստացել։ Այսպիսով, կուսկազմակերպությունը, կոլեկտիվի շահերից բխող հիմնավորված որոշումներ ընդունելու և դրանց կատարմանը մշտապես հետամուտ լինելու շնորհիվ, հասավ որոշակի հաջողությունների։ Կուսքաղկոմի բյուրոն իր նիստերից մեկում լսեց այդ փորձը։ Նիստին հրավիրվեցին հիմնարկ-ձեռնարկությունների պետեր, սկզբնական կուսակցական, կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունների քարտուղարներ ու նախագահներ։ «Իմպուլս»-ցիների առաջավոր փորձի մասին ընդունած որոշումն ուղարկվեց սկզբնական կուսկազմակերպություններին։ Դրա շնորհիվ, կոլեկտիվներում լայն տարածում ստացավ միջարտադրամասային և անհատական մրցությունը, ավելի արդյունավետ դարձավ սոցմրցության արդյունքների ամփոփումը։ Միայն 1973 թ. անհատական մրցության մեջ հաղթող ճանաչվեց 160 մարդ, որոնք արժանացան «Սոցիալիստական մրցության հաղթող» կրծքանշանի։

Այս կամ այն որոշումը կենսագործելու համար, բնականաբար, պահանջվում են աշխատանքի համապատասխան ձևեր ու մեթոդներ։ Օրինակ, քաղկոմն իր պլենումներից մեկում քննարկեց «Արտադրության մեջ կոմունիստների ավանգարդային դերի ապահովման վիճակը և կուսկազմակերպությունների խնդիրները» հարցը և ընդունեց համապատասխան որոշում։ Այդ որոշման կատարման համար մոբիլիզացվեցին բոլոր սկզբնական կուսկազմակերպությունները, վերջիններս քննարկեցին պլենումի որոշումը։ Յուրաքանչյուր կազմակերպություն մշակեց կոնկրետ միջոցառումներ՝ որոշումը կենսագործելու, բոլոր օղակներում կոմունիստների կարգապահությունն ու պատասխանատվությունը բարձրացնելու համար։

Քաղաքային կոմիտեն միաժամանակ պլենումի անդամներից ստեղծեց հանձնաժողով՝ տեղերում ստուգելու կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության վիճակը, ինչպես նաև որոշումների կատարման ընթացքը։ Հանձնաժողովը միաժամանակ պետք է տեղերում կոնկրետ օգնություն ցույց տար գործերի վիճակը բարելավելու համար։ Այս ամենի հետ մեկտեղ, քաղկոմն անհրաժեշտ համարեց բյուրոյի նիստերում կոմունիստների ակտիվության բարձրացման, նրանց ավանգարդային դերի ապահովման մասին։

Յուրաքանչյուր որոշման գլխավոր նպատակը կուսկազմակերպություններում, տնտեսություններում, հիմնարկ-ձեռնարկություններում, նրանց ստորին օղակներում գործերի վիճակի բարելավումն է, թերությունների վերացումը, որոնք պայմանավորված են տվյալ ասպարեզը ղեկավարող անձնավորությունների նախաձեռնությունից ու պատասխանատվությունից։ Այդ նկատառումով էլ խստորեն հաշիվ ենք պահանջում այն ղեկավարներից, որոնք արդյունավետ միջոցներ չեն ձեռնարկում կուսակցական որոշումների կենսագործման համար։ Քաղկոմի բյուրոն, օրինակ, կուսակցական որոշումները չկատարելու համար, աշխատանքից ազատել է կենցաղսպասարկման մինիստրության Դիլիջանի շինարարական տեղամասի պետ Մ. Մելյանին, քաղսովետի գործկոմի կոմունալ սպասարկման գրասենյակի կաթսայատների պետ Բ. Հովսեփյանին, բնակկառավարչության պետ Ա. Ալիխանյանին և ուրիշների։

Կուսքաղկոմը, որոշումների կենսագործումը ապահովելու համար, կարևոր տեղ է հատկացնում նաև հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարների, սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների և առանձին կոմունիստների ինքնահաշվետվություններին, պարբերական ստուգայցերին։ Ինքնահաշվետվություններով հանդես են եկել, օրինակ, կահույքի ֆաբրիկայի դիրեկտոր Ռ. Գրիգորյանը, կուսբյուրոյի քարտուղար Վ. Միքայելյանը, հանքային

ջրերի գործարանի կուսկազմակերպության քարտուղար Է. Հովսեփյանը, կենցաղային սպասարկման կոմբինատի կուսբյուրոյի քարտուղար Ն. Թամրազյանը, դիրեկտոր Է. Ալիխանյանը և շատ ուրիշներ։ Մեզ մոտ ստուգայցերը կատարվում են եռամսյակը մեկ անգամ։ Դրանց մասնակից ենք դարձնում մասնագետներին, կուսակցական աշխատողներին։ Այս մեթոդը նպաստում է ոչ միայն կոմունիստների նախաձեռնության և ակտիվության զարգացմանը, այլև կազմակերպությունների մարտունակության ամրապնդմանը, բարձրացնում է մարդկանց պատասխանատվությունն ընդունած որոշման կատարման համար։

Որոշումների կատարման ստուգման հարցերը նախատեսվում են քաղկոմի աշխատանքի հեռանկարային, բյուրոյի՝ եռամսյակային և բաժինների ամսական պլաններում։ Ստեղծել ենք հատուկ մատյան, որտեղ նշվում է, թե ինչ պետք է անել և ինչպես են կատարվում որոշումները։ Բացի դա, քաղկոմի կուսակցական-կազմակերպական աշխատանքի բաժինն ունի առանձին տետր, որտեղ գրանցվում են կուսժողովներում կոմունիստների արած քննադատական դիտողություններն ու առաջարկությունները։ Այդ ձևով քաղկոմում հավաքվում է արժեքավոր ինֆորմացիա, տեղերում որոշումների կատարման և գործերի վիճակի մասին։

Որոշումների կատարման վերահսկողության գործին լայնորեն ընդգրկում ենք քաղկոմի արտահաստիքային բաժիններն ու հանձնաժողովները, պլենումի անդամներին ու կուսակցական ակտիվին։

Կուսքաղկոմի կուսակցական-կազմակերպական աշխատանքի բաժինը քաղկոմի բյուրոյի որոշումների կատարման հսկողությունն իրականացնում է հետևյալ ձևով։ Նախ, բյուրոյի քննարկման համար հարց նախապատրաստող յուրաքանչյուր հրահանգիչ անձամբ հետևում է դրա առթիվ ընդունած որոշման կատարմանը։ Նա հաճախ լինում է կազմակերպություններում և հիմնարկ-ձեռնարկություններում, տնտեսությունների ղեկավարներից ու կուսքարտուղարներից պահանջում ինֆորմացիա այդ ասպարեզում նրանց կատարած աշխատանքի մասին։ Օրինակ՝ հրահանգիչ Հ. Տոնոյանը ոչ միայն վերահսկում է բյուրոյի որոշումների կատարումը, այլև կոնկրետ օգնություն ցույց տալիս, միջոցներ ձեռնարկում սովխոզներում նկատվող այս կամ այն թերությունը վերացնելու համար։ Այդպիսի հետևողականությամբ «Իմպուլս» գործարանի թողարկած արտադրանքի որակի, արդյունաբերական ձեռնարկությունների արտադրողականության բարձրացման տեմպերի աճի ապահովման, սոցմրցության կազմակերպման առթիվ ընդունված որոշումների կատարմանը վերահսկում է հրահանգիչ Մ. Ենգիբարյանը։ Հատկապես հացի գործարանում գործերի վիճակի բարելավման հարցով նա զբաղվել է շաբաթներ շարունակ։ Նման ձևով շինարարության հարցերի առթիվ ընդունած որոշումները վերահսկում է հրահանգիչ Մ. Թամրազյանը։ Նա հաճախ է լինում շինարարական օբյեկտներում, վերլուծություններ կատարում, հարցեր լուծում, կոնկրետ օգնություն ցույց տալիս սկզբնական կուսկազմակերպություններին։

Երկրորդ, բաժինը համապատասխան անձանցից պահանջում է գրավոր ինֆորմացիաներ՝ որոշումների կատարման ընթացքի և արդյունքների մասին։ Օրինակ՝ նման ինֆորմացիաներ ենք ստացել կինոցանցի գործերի վիճակի, տեխնիկումներում ուսման առաջադիմության բարձրացման, № 12 շինտրեստի ավտոբազայի գործունեության բարելավման և բազմաթիվ այլ հարցերի վերաբերյալ քաղկոմի բյուրոյի որոշումների կատարման ընթացքի մասին։ Եթե պարզվել է, որ այս կամ այն թերությունը չի վերացված, բաժինը նոր ժամկետ է նշանակել և տվել համապատասխան հանձնարարություն։

Երրորդ, բաժինը պլանավորված կերպով նախապատրաստում և քաղկոմի բյուրոյի քննարկմանն է ներկայացնում այս կամ այն որոշման կատարման ընթացքի վերաբերյալ հարցեր։ Նախատեսված էր երրորդ եռամսյակում քննարկել նման երկու հարց։



Չորրորդ, բյուրոյի որոշումների կատարման ընթացքն ու արդյունքներն ուսումնասիրելու նպատակով բաժինը հունիս ամսին արտահաստիքային հրահանգիչների և ակտիվիստների ուժերով կազմակերպեց ստուգայց 24 սկզբնական կուսկազմակերպություններում, իսկ հուլիսի սկզբին քաղկոմի վերստուգիչ հանձնաժողովի անդամների ուժերով՝ 22-ում։ Երկու ստուգայցերի արդյունքները քննարկվեցին բաժնի նիստում և համապատասխան շրջաբերականով ուղարկվեցին կազմակերպություններին։

Եվ, վերջապես, ըստ քաղկոմի բյուրոյի հաստատած եռամսյակային աշխատանքային պլանի, նախատեսվում է նման ստուգայցեր կատարել ամեն ամիս այն հաշվով, որ յուրաքանչյուր եռամսյակում պարտադիր ուսումնասիրվեն բոլոր սկզբնական կուսկազմակերպությունները։

Անշուշտ, որոշումների կատարման ապահովումը չի սահմանափակվում նշված ձևերով ու մեթոդներով։ Քաղկոմի աշխատանքային պրակտիկայում կիրառվում է նաև հետևյալ ձևը։ Յուրաքանչյուր ամիս հրավիրում ենք կուսկազմակերպությունների քարտուղարների խորհրդակցություն, որտեղ լսվում են ինֆորմացիաներ՝ որոշումների կատարման ընթացքի մասին։ Նրանք պատմում են, թե ինչ ներգործություն կամ ազդեցություն են ունեցել սեփական կամ քաղաքային կոմիտեի բյուրոյի որոշումները։ Սովորաբար խորհրդակցությունների մասնակիցներին ծանոթացնում ենք նաև ՍՄԿԿ Կենտկոմի, ՀԿԿ Կենտկոմի առանձին որոշումներին, կոնկրետ խնդիրներ դնում կուսքարտուղարների առջև՝ դրանց կենսագործումը ապահովելու համար։

Պետք է խոստովանել, որ մեր ընդունած ոչ բոլոր որոշումներն են կենսագործվել կուսկազմակերպությունների և կոմունիստների կողմից։ Իրականում եղել են դեպքեր, երբ դրանցից մի քանիսը մնացել են թղթի վրա։ Պատճառն այն է, որ ոմանք չեն ունեցել կուսակցական աշխատանքի փորձ, իսկ մի մասը՝ պատասխանատվություն ու լուրջ վերաբերմունք՝ դեպի գործը։ Նման դեպքերում քաղաքային կոմիտեն նպատակահարմար է գտել նրանց մոտ ուղարկել ավելի փորձառու կոմունիստների՝ օգնություն ցույց տալու համար։ Իսկ թերացողների նկատմամբ ձեռնարկել ենք համապատասխան միջոցներ։

Իր ընդունած որոշումների ներգործունությունն ուժեղացնելու համար քաղկոմը համակողմանիորեն գործի է դնում նաև «Դիլիջան» քաղաքային թերթն ու տեղական ռադիոհաղորդումների խմբագրությունը։ Նրանց միջոցով մասսայականացնում ենք մեր որոշումները, քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտում վեր հանում այն թերությունները, որոնք տեղ են գտել այս կամ այն որոշման կատարման ճանապարհին։ Ռադիոյով, թերթի էջերում ելույթներով հանդես են գալիս մեր կուսկազմակերպությունների և նրանց բյուրոների քարտուղարները, հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները, քաղկոմի պատասխանատու աշխատողները։ Նրանց ելույթները յուրատեսակ հաշվետվություններ են իրենց կոլեկտիվի, կազմակերպության կատարած աշխատանքի, իրենց վերաբերող որոշումների կենսագործման մասին։

Կուսակցական աշխատանքի պրակտիկան ցույց է տալիս, որ չեն կենսագործվում այն որոշումները, որոնք չեն վերաբերում հրատապ ու լուծման կարոտ հարցերին կամ խորությամբ չեն ուսումնասիրվում։ Մինչդեռ որոշման ներգործունությունն ապահովելու համար հարկավոր է, որ այն լինի որոշակի, զերծ՝ երկրորդական ու ավելորդ հարցերից, նրանում նշված լինեն հանձնարարությունների ժամկետները, կատարողները։ Որոշումը պետք է բխի կոնկրետ խնդիրների ու ժամանակի պահանջներից, շոշափի առավել հրատապ պրոբլեմներ։ Որոշման հանդեպ ներկայացվող այս պահանջները բավարարելու համար պետք է գործերի իրական վիճակն ուսումնասիրել խորությամբ ու բազմակողմանիորեն, վերլուծել մանրակրկիտ. Իսկ դրա համար հարկավոր են բարձր պատասխանատվություն, հմտություն, գիտելիքներ, փորձ ու կարո-

ղությունը։ Որոշում գրելն էլ արվեստ է։ Ուստի, պետք է տիրապետել այդ արվեստի ձևերին ու մեթոդներին։ Այն չպետք է գրել հապճեպորեն։ Նման դեպքերում որոշումը կարող է ունենալ նույնիսկ հակառակ ազդեցություն, վնաս պատճառել այն ընդունող կազմակերպությանը, նրա հեղինակությանը, կոմունիստների մոտ առաջացնել անպատասխանատվություն կատարման նկատմամբ։ Մինչդեռ պետք է հասնել այն բանին, որպեսզի բոլորն զգան և ընդունեն, որ որոշման կատարումը պարտադիր է յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր կազմակերպության համար, այն կանոնադրական պահանջ է։ Լավ է քիչ որոշում ընդունել, բայց կենսագործել հետևողականորեն, քան շատ որոշումներ ընդունել, բայց կատարել կիսատ-պռատ, կամ ընդհանրապես չկատարել։

Որոշումների կատարման ապահովումը տվյալ կուսկազմակերպության առավել կարևոր խնդիրն է, նրա աշխատանքի հաջողության գրավականը, գործունեության գնահատականը։ Այն մեծապես պայմանավորված է կուսկազմակերպության մարտունակությամբ, որն անհաշտ թշնամի է անտարբերության, լիբերալության, հանդուրժողականության, ձևամոլության, բյուրոկրատիզմի և շատ այլ խորթ ու վնասակար երևույթների։

Դիլիջան քաղաքի աշխատավորները պատվավոր խնդիր ունեն կատարելու ընթացիկ՝ իններորդ հնգամյակում։ Այդ խնդիրը հաջողությամբ կարող է լուծվել միայն այն դեպքում, երբ կուսկազմակերպությունները քաղաքական-մասսայական արդյունավետ գործունեություն ծավալեն աշխատավորական կոլեկտիվների շրջանում, հետամուտ լինեն իրենց ընդունած որոշումների կատարմանը։ Կուսքաղկոմը ձգտում է ավելի ուժեղացնել իր որոշումների ներգործունությունը, դրանք ծառայեցնել շրջանի կուսկազմակերպության առջև ծառացած տնտեսական և քաղաքական խնդիրների իրականացմանը։

# ՆԵՐԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ ԵՎ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ

Հ. Ռ. ԱԼԻԽԱՆՅԱՆ

ՍՄԿԿ XXIV համագումարը խնդիր դրեց՝ ամեն կերպ կատարելագործել կուսակցական ղեկավարման մեթոդները, խստորեն պահպանել ու իրագործել կուսակցական կյանքի լենինյան նորմերը, լայնորեն ծավալել ներկուսակցական դեմոկրատիան՝ այդ ամենի մեջ տեսնելով կուսակցական աշխատանքի հետագա կատարելագործման, կոմունիստների ճիշտ դաստիարակության լավագույն միջոցը, առաջադրված խնդիրների լուծման համար աշխատավորության ուժերի մոբիլիզացման երաշխիքը։

Ներկուսակցական դեմոկրատիայի հետագա ծավալումն ու զարգացումը, ինչպես ընդգծված է համագումարի փաստաթղթերում, ենթադրում են կուսակցական կարգապահության բոլոր ամենայնի ամրապնդում։ Դա լիովին բխում է դեմոկրատական ցենտրալիզմի՝ դեմոկրատիայի և կարգապահության անխզելի միասնության վերաբերյալ լենինյան հայտնի դրույթից։ Լենինը սովորեցնում էր, որ դեմոկրատիան ու կարգապահությունը կուսակցության մեջ միասնական ու միաձույլ են. առանց գիտակցական կարգապահության անհնար է պրակտիկայում կենսագործել ներկուսակցական դեմոկրատիան։

Ներկայումս ներկուսակցական լայն դեմոկրատիայի և կուսակցական խստագույն կարգապահության զուգակցումը առավել մեծ նշանակություն է ստացել։ Ընդ որում, կուսակցական կարգապահությունն անբաժանելի է պետական ու աշխատանքային կարգապահությունից, դրանք պայմանավորված են միմյանցով, գտնվում են փոխադարձ կապի ու կախվածության մեջ։

ՍՍՀՄ եղբայրական հանրապետությունների միասնական ընտանիքում Սովետական Հայաստանը նույնպես անցած տարիներին վիթխարի առաջընթաց է կատարել ժողովրդական տնտեսության վերելքի, սոցիալական զարգացման և կուլտուրական շինարարության ճանապարհին։ Գործարաններում, ֆաբրիկաներում, սովխոզներում ու կոլտնտեսություններում, հիմնարկություններում և ուսումնական հաստատություններում տասնյակ հազարավոր աշխատավորներ դրսևորում են հասարակական պարտքի խոր գիտակցում, ակտիվորեն մասնակցում կոմունիստական շինարարությանը։

Սակայն, այնուամենայնիվ, աշխատանքի մեջ պահանջկոտության ու կարգապահության և յուրաքանչյուրի պատասխանատվության հարցը դարձել է միանգամայն հրատապ ու այժմեական։ Այն թելադրում է ինքը՝ կյանքը, բխում՝ ժողովրդի շահերից։ Դրա անհրաժեշտությունը, ինչպես սովորեցնում է կուսակցությունը, պայմանավորված է այն բանով, որ մեր օրերում անչափ մեծացել ու բարդացել են տնտեսական ու քաղաքական պրոբլեմները, որոնց լուծման համար բոլոր աշխատողներից պահանջվում է դրսևորել կազմակերպվածություն, ներքին մոբիլիզացիոն վիճակ։

ՀԿԿ Կենտկոմի 1973 թ. ապրիլյան պլենումը նշեց, որ ձեռք բերած հաջողությունների հետ միաժամանակ, մեր գործունեության մեջ կան զգալի թերություններ ու չլուծված հարցեր։ Ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերում նկատվում է արտադրության աճի, հնգամյա պլանի սահմանած

տեմպերի որոշ նվազում. առանձին ձեռնարկություններ նկատելիորեն իջեցրել են տեխնիկա-տնտեսական ցուցանիշները: Կուսկազմակերպությունների և տնտեսական մարմինների անբավարար աշխատանքի հետևանքով անցած տարի մի քանի շրջաններում թերակատարվեցին խաղողի, պտղի, կարտոֆիլի արտադրության և մթերման պետական առաջադրանքները, լուրջ թերություններ կան կապիտալ շինարարության ասպարեզում: Սպասարկման ոլորտի և այլ ձեռնարկություններում ու կազմակերպություններում քիչ չեն մեր հասարակությանը խորթ երևույթները, սոցիալիստական համակեցության կանոնների խախտումները:

Կենտկոմի պլենումը կուսկազմակերպությունների առաջնահերթ պարտականությունը համարեց՝ ավելի մեծ ակտիվություն ու հետևողականություն հանդես բերել կարգապահության ամրապնդման, հանձնարարված գործի նկատմամբ աշխատողների անձնական պատասխանատվության բարձրացման համար: Կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների պարտքն է, ասված է պլենումի որոշման մեջ, հասնել այն բանին, որպեսզի արտադրության բոլոր տեղամասերում հաստատվի աշխատանքային ու արտադրական պատշաճ կարգապահություն: Իրենց ջանքերն ուղղելով այդ նպատակին, հանրապետության առաջավոր շատ կուսկազմակերպություններ հասել են լավ արդյունքի: «Հայէլեկտրալույս» միավորման գլխավոր ձեռնարկությունում՝ Երևանի էլեկտրալամպերի գործարանում, օրինակ, յուրաքանչյուր կոմունիստ (ղեկավար, թե շարքային) իր տեղամասում աշխատում է բարեխղճորեն, կուսակցական բարձր պատասխանատվությամբ: Կոլեկտիվի ամեն մի անդամ պատասխանատվություն է զգում ոչ միայն իրեն վստահված գործի, այլև տվյալ տեղամասի, ամբողջ ձեռնարկության գործերի վիճակի համար: Լամպագործները 1973 թ. առաջնություն են շահել համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, նվաճել ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշը: Դա արդյունք է ամենից առաջ այն բանի, որ գործարանի կուսկազմակերպությունը սիստեմատիկ ու արդյունավետ աշխատանք է տանում հանձնարարված գործի նկատմամբ պատասխանատվության և կարգապահության ոգով մարդկանց դաստիարակելու համար: Կուսկոմիտեն և արտադրամասային կուսկազմակերպությունները նրանց նկատմամբ ցուցաբերում են բարձր պահանջկոտություն, լռությամբ չեն անցնում կարգապահական թեկուզ ամենափոքր խախտման կողքից, ժամանակին միջամտում և միջոցներ են ձեռնարկում դրանց կանխման ու վերացման համար: Այսպիսի շատ օրինակներ կարելի է բերել:

Պրակտիկայում վաղուց հաստատվել է, որ կուսակցական, պետական ու աշխատանքային կարգապահությունը չի կարելի ամրապնդել առանց կատարման հսկողության ճիշտ կազմակերպման: Լենինականի երկաթուղային հանգույցի կուսկոմիտեն և սկզբնական կազմակերպությունները հետևողականորեն վերահսկում են որոշումների կենսագործմանը: Ընդ որում, կոմիտեի անդամներն իրենք են հաճախակի ուսումնասիրում ու զբաղվում դրանով, այդ գործում ընդգրկելով նաև շարքային կոմունիստներին: Արդյունքը լինում է այն, որ ժամանակին իրագործվում են նախատեսված միջոցառումները, մեծանում է որոշումների ներգործման ուժը:

Երևանի, Լենինականի, Կիրովականի, Նոյեմբերյանի, Թալինի և այլ շրջանների շատ կուսկազմակերպություններում սովորույթ է դարձել յուրաքանչյուր ժողովում ինֆորմացիա լսել որոշումների իրականացման ընթացքի մասին, հաշիվ պահանջել նրանցից, ովքեր թերացել են կատարել տրված հանձնարարությունները:

Որոշ քաղկոմ-շրջկոմներում հատուկ քարտարաններում գրանցվում են սկզբնական կուսկազմակերպությունների որոշումները: Այս մեթոդը հնարավորություն է ընձեռում ապարատի աշխատողներին, հատկապես հրահանգիչներին, լինելով տեղերում, հետաքրքրվել դրանց կատարմամբ և անհրաժեշտության դեպքում օգնություն ցույց տալ: Շրջկոմի բյուրոյի այն որոշումները,



որոնք վերաբերում են սկզբնական կուսկազմակերպություններին, հանվում են կատարման հսկողությունից միայն այն բանից հետո, երբ տեղերում հանգամանորեն ուսումնասիրվում է գործերի վիճակը, և համապատասխան բաժինը տալիս է իր եզրակացությունը դրանց իրագործման մասին: Ինչո՞ւ, օրինակ, այս մեթոդը չեն կիրառում նաև կուսկոմիտեները արտադրամասային կուսկազմակերպությունների նկատմամբ, իհարկե, հաշվի առնելով իրենց աշխատանքի առանձնահատկությունները:

Սակայն որոշումների կատարման գործում գոյություն ունեն շատ թերություններ. հաճախ դրանք ժամանակին չեն իրագործվում կամ կատարվում են թերի, երբեմն էլ հարկ է լինում միևնույն հարցի մասին ընդունել մի քանի որոշում: Վարդենիսի շրջանի Կարճաղբյուրի սովխոզի կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում կոմունիստները, ամփոփելով կատարած զգալի աշխատանքը, իրենց ելույթներում միաժամանակ նշեցին, որ կուսկազմակերպությունը չի հետևել կարտոֆիլի բերքատվության բարձրացման մասին ընդունած որոշման կենսագործմանը, նախատեսված 100-ի փոխարեն յուրաքանչյուր հեկտարից ստացվել է ընդամենը 30 ցենտներ բերք: Պատճառը ցանքերի խնամքը, մշակությունը և ոռոգումը աչքաթող անելն է: Կուսկազմակերպությունը որոշում ընդունելուց հետո այն չի ամրապնդել կոնկրետ գործերով:

Երբեմն կուսկազմակերպություններն իրենց վրա են վերցնում վարչական աշխատողների ֆունկցիաները կամ նրանց տալիս են այնպիսի հանձնարարություններ, որոնք ուղղակիորեն մտնում են իրենց անմիջական պարտականությունների մեջ: Նման որոշումները ոչ միայն չեն նպաստում տնտեսական ղեկավարների պատասխանատվության բարձրացմանը, այլ, ընդհակառակը, նրանց սովորեցնում են մշտապես և բոլոր դեպքերում սպասել ինչ-որ հատուկ ցուցումների ու հիշեցումների՝ իրենց պաշտոնական պարտականությունները կատարելու համար: Մինչդեռ Վ. Ի. Լենինը խորհուրդ էր տալիս կառավարման ու ղեկավարման հարցերի քննարկումը զուգակցել կոնկրետ խնդիրների լուծման համար յուրաքանչյուր աշխատողի անձնական պատասխանատվության սահմանման, որոշումների ժամանակին ու ճշգրիտ կենսագործման հետ:

Փորձը ցույց է տալիս, որ արտադրության մեջ կարգ ու կանոնի հաստատմանը շատ բանով օգնում է աշխատանքի հստակ կազմակերպումը, բանվորների կուլտուր-կենցաղային և աշխատանքային պայմանների բարելավման նկատմամբ մշտական հոգատարությունը: Այդ է վկայում Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի օրինակը: Կոմբինատի կուսկազմակերպությունն ու տնտեսական ղեկավարությունը հետևողական աշխատանք են տանում արտադրության կազմակերպման բարելավման համար: Ընթացիկ հնգամյակի հենց սկզբից ձեռնարկություններում ու արտադրամասերում իրականացվում է տեխնիկական վերազինման մեծ ծրագիր, ֆաբրիկաներում, օժանդակ բաժիններում և բանվորական հանրակացարաններում ստեղծվել և ստեղծվում են աշխատանքային ու կուլտուր-կենցաղային օրինակելի պայմաններ: Հիմնովին նորոգվել, բարեփոխվել են արտադրական և կուլտուր-կենցաղային մասնաշենքերը, վերջերս շահագործման է հանձնել 150 տեղանոց հյուրանոցային տիպի հանրակացարանը՝ փոքրահասակ երեխաներ ունեցող բանվորուհիների համար: Էլ չենք խոսում մսուր-մանկապարտեզների, պիոներական ճամբարի մասին: Կոմբինատն ունի իր առողջարանը (պրոֆիլակտորիում), մշակույթի հիանալի ու հարմարավետ պալատ՝ մանկական ու սպորտային բաժիններով:

Արտադրության կուլտուրայի և սանիտարա-հիգիենիկ լավագույն պայմանների համար ծավալված համամիութենական ստուգատես-մրցությունում կոմբինատն արժանացել է առաջին կարգի մրցանակի: Այս ամենն զգալիորեն նպաստում է կարգապահության բարձրացմանը, օգնում կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի՝ խորապես զգալու իր քաղաքացիական պարտքը, գիտակցորեն վերաբերվելու իր գործին:

Հանրահայտ է սոցիալիստական մրցության հսկայական դաստիարակիչ

դերը։ Այն հաջողությամբ է կազմակերպվում Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի գեներատորների արտադրամասում, որտեղ աշխատում են մոտ 900 բանվոր-ծառայողներ։ Անցած տարվա սկզբին կուսբյուրոն հերթական նիստում քննարկեց տարվա պլանը ժամկետից շուտ կատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումը։ Ելնելով որոշման պահանջներից՝ արվեցին գործարար առաջարկություններ և հաստատվեց կոնկրետ միջոցառումների պլան, ստեղծվեցին պատվո գիրք, պատվոտախտակ։ Այստեղ պարբերաբար ստուգում են ստանձնած պարտավորությունների կատարումը, ամփոփում և մասսայականացնում արդյունքները։ Կոմունիստներն առաջին շարքում են, ապահովում են իրենց ավանգարդային դերը, այստեղ գովեստով են խոսում ռացիոնալիզատորներ Հ. Պետրոսյանի, Ա. Հակոբյանի, արտադրության առաջավորներ Ռ. Պետրոսյանի, Ս. Մանուչարյանի և ուրիշների մասին։ Գործարար մրցությունն ուղղվում է ոչ միայն արտադրական պլանների, այլև յուրաքանչյուր աշխատողի ստանձնած պարտավորությունների ժամանակին կատարմանը։

Կարգապահության ամրապնդման և կադրերին բարձր պատասխանատվության ոգով դաստիարակելու կարևոր միջոցներից մեկը ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության իրագործումն է։ Մոտ հինգ տարի առաջ էր, որ առաջին արտադրանքը տվեց Երևանի վիտամինային պրեպարատների գործարանը։ Անցած տարիներին ձեռնարկությունն ընդլայնվել է, մեծացել է նրա արտադրական կարողությունը։ Կուսբյուրոն մշակել է կազմակերպական ու քաղդաստիարակչական միջոցառումների հեռանկարային պլան և հետևողականորեն իրականացնում է այն, ապահովում մշտական ու գործարար վերահսկողություն յուրաքանչյուր տեղամասի և ամբողջ գործարանի ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ։ Բյուրոն մասնագետների օգնությամբ բազմակողմանիորեն ուսումնասիրեց և վերլուծեց հնգամյակի առաջին երկու տարվա արդյունքները։ Դրանք ցույց տվեցին, որ չնայած առաջադրանքների հաջող կատարմանը, հիմնական արտադրամասերում աշխատանքի արտադրողականության աճը ետ է մնացել պլանային առաջադրանքներից։ Դրանցից ելնելով, վճռական տարվա սոցիալիստական պարտավորությունների մշակման և ընդունման ժամանակ, շեշտը դրվեց նրանց տնտեսական հիմնավորվածության վրա։ Կոլեկտիվի ուժերն ուղղվեցին հենց այդ նպատակին։ Հաշվետու-ընտրական ժողովում շատ դիտողություններ եղան այն արտադրամասի հասցեին, որտեղ արտադրվում է վիտամին։ Նշվեց, որ այնտեղ սարքավորումները գործում էին թերբեռնվածությամբ, դանդաղ էին ներդրվում տեխնիկական նորույթները։ Ամփոփելով արված առաջարկություններն ու քննադատական դիտողությունները՝ կուսբյուրոն ադմինիստրացիայի հետ մշակեց և իրականացրեց միջոցառումների լայն պլան, որի շնորհիվ արտադրամասն սկսեց աշխատել ռիթմիկ կերպով, աճեց արտադրանքի թողարկումը։

Բյուրոյի գործունեության մեջ կարևորը մարդկանց հետ տարվող աշխատանքն է։ Այստեղ սիստեմատիկաբար լսվում են կոմունիստների հաշվետվությունները իրենց կանոնադրական պարտականությունների կատարման մասին, խիստ պահանջներ են ներկայացվում ո՛չ միայն կուսակցության անդամներին, այլև մյուս աշխատողներին։

Պրակտիկան ցույց է տալիս, որ այնտեղ, ուր կուսակցական և հասարակական-մասսայական վերահսկողության ձևերը գործում են միասնաբար, լրացնում մեկը մյուսին, անպայման հասնում են լավ արդյունքի, թերությունները բացահայտվում են ժամանակին, կանխվում աշխատանքի ձախողումները։ Ցավոք, ոչ ամենուրեք է, որ սկզբնական կուսկազմակերպությունները հաջողությամբ են իրականացնում իրենց այդ կարևոր պարտականությունը։ Այլապես ինչո՞վ բացատրել, որ առանձին ձեռնարկություններ չեն կատարում պետական առաջադրանքները, տալիս են ցածրորակ արտադրանք։ Չէ՞ որ նրանցում նույնպես կան սկզբնական կուսկազմակերպություններ, որոնք պարտավոր էին ժամանակին միջամտել գործին և խստորեն պահանջել ղեկա-



վարներից ու մյուս աշխատողներից՝ իրենց պաշտոնական պարտականությունները կատարել բարեխղճորեն։

Միանգամայն պարզ է, որ ձեռնարկությունների անբավարար աշխատանքի և աշխատավորության սպասարկման գործում եղած թերությունների համար պատասխանատվություն են կրում նաև համապատասխան մինիստրություններն ու գերատեսչությունները, որոնք կոչված են ապահովելու ժողովրդական տնտեսության տվյալ ճյուղի կոնկրետ ղեկավարումը։ Կենցաղսպասարկման մինիստրության աշխատանքի վերաբերյալ ՀԿԿ Կենտկոմի վերջերս ընդունած որոշման մեջ նշված է, որ հենց մինիստրության ապարատի պատշաճ վերահսկողության բացակայության հետևանքով է, որ նկատվում են չարաշահումներ ու խախտումներ։ Մինչդեռ ինչպես այս մինիստրությունում, այնպես էլ մյուս տեղերում, դրանք չէին լինի, եթե սկզբնական կուսկազմակերպություններն ավելի մեծ պատասխանատվությամբ վերաբերվեին ապարատի գործերին, երևան հանեին որոշումներն ու կարգադրությունները ժամանակին չկատարելու պատճառները, կոնկրետ միջոցառումներով օգնեին դրանց կանխմանն ու վերացմանը։

ՍՄԿԿ XXIV համագումարը, կուսկազմակերպությունների պատասխանատվության ու ակտիվության հետագա բարձրացման նպատակով վերահսկողության ֆունկցիայի կանոնադրական դրույթը, արտադրական բնույթի ձեռնարկություններից բացի, տարածեց նաև բոլոր այն հիմնարկությունների սկզբնական կուսկազմակերպությունների վրա, որոնց ադմինիստրացիաների ֆունկցիաները դուրս չեն գալիս իրենց կոլեկտիվների շրջանակներից։ Իսկ գերատեսչական հիմնարկությունների կուսկազմակերպությունների համար սահմանվեց, որ նրանք հսկողություն են իրականացնում ապարատի գործունեության վրա։ Այսպիսով, բոլոր կուսկազմակերպությունները ստացան վերահսկողության իրավունք, որը լիովին համապատասխանում է մեր հասարակարգում կուսակցության ղեկավար դերին և հնարավորություն է տալիս նրանց՝ ավելի մեծ պահանջկոտությամբ մոտենալ կադրերի աշխատանքային գնահատմանը և ուժեղացնել կատարման հսկողությունը։ Կուսկազմակերպությունների ֆունկցիաների նոր ընդլայնումը իրենով նշանավորեց ներկուսակցական դեմոկրատիայի հետագա զարգացումը, միաժամանակ նպաստեց կուսակցության անդամների ավանգարդային դերի ու պատասխանատվության բարձրացմանը։ Դրանով մեկ անգամ ևս հաստատվեց դեմոկրատիզմի և կարգապահության միջև գոյություն ունեցող դիալեկտիկական կապը։

Ինչպես հայտնի է, կուսակցական վերահսկողությունը չի ենթադրում անմիջականորեն միջամտել ու խառնվել տնտեսական օրգանների գործունեությանը։ Անհանդուրժելի է, երբ կուսկազմակերպության բյուրոն կամ կոմիտեն, ինչպես նաև քաղկոմ-շրջկոմներն զբաղվում են այնպիսի գործերով, որ փաստորեն փոխարինում են տնտեսական ղեկավարներին կամ սովետական մարմիններին։ Դա ոչ միայն կարգապահություն չի դաստիարակում, այլ, ընդհակառակը, ծնում է անպատասխանատվություն։ Դրանով կուսկոմիտեն թուլացնում է իրեն, որպես քաղաքական-կազմակերպչական ղեկավար օրգանի, նրան ժամանակ չի մնում սիստեմատիկ կերպով իրականացնելու կուսակցական վերահսկողությունն ու որոշումների կատարման ստուգումը։ Մինչդեռ ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի առաջադրած խնդիրը հենց այն է, որ պահանջկոտությունը լինի ղեկավարման մշտական գործոնը, նրա անխախտ սկզբունքը։

Պահանջկոտությունն իր ձևով ու բովանդակությամբ պետք է հենվի սոցիալիստական սկզբունքների վրա, համապատասխանի մեր հասարակարգի դեմոկրատական բնույթին, նպաստի կոմունիստական գիտակցականության դաստիարակմանը։ Որոշումների կատարման նկատմամբ սիստեմատիկ հսկողության, մարդկանց համբերատար դաստիարակության պայմաններում քիչ է զգացվում պատժելու անհրաժեշտությունը։ Սակայն այդ երբեք չի նշանակում, թե պետք է ներողամտություն ցուցաբերել իրենց չարդարացողների հանդեպ։

Կուսակցական ու պետական կարգապահությունը խախտողները չպետք է հույս ունենան ինչ-որ ներողամիտ վերաբերմունքի: Այս առնչությամբ չի կարելի չխոսել տեղերում դեռևս նկատվող մի երևույթի մասին: Բանն այն է, որ երբեմն հիմնարկ-ձեռնարկությունների որոշ ղեկավարներ, սխալ ըմբռնելով մասսաների նախաձեռնության լայն ծավալման և նրանց ակտիվության բարձրացման կուսակցության ներկա կուրսի էությունը, չեն կարողանում ճշտորեն զուգակցել պատասխանատվության ու կարգապահության պահանջը սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման հետ: Ըստ էության, նրանք չեն համարձակվում սրությամբ դնել կարգապահության հարցը, վախենում են օգտագործել իրենց տրված իշխանությունը, վարչական և ծառայական իրավունքները, կարգի հրավիրել և պատժել անկարգապահներին: Սոցիալիստական դեմոկրատիզմի սկզբունքների այսպիսի պատկերացման կեղծ ու սխալ լինելն ակներև է:

Կուսկազմակերպության ներազդեցությունը կարգապահության ամրապնդման վրա, ամենից առաջ, պայմանավորված է տվյալ կազմակերպության մարտունակությամբ, ներկուսակցական կյանքի ակտիվությամբ: Իսկ այդ ամենը, ինչպես շեշտել է Վ. Ի. Լենինը, լիովին պայմանավորված է յուրաքանչյուր կոմունիստի գործունեությամբ, նրա վարքագծով ու ավանգարդային դերով: Այդ ճշմարտությունը հաստատվում է մեր առօրյա կյանքի յուրաքանչյուր քայլափոխում:

ՍՄԿԿ կանոնադրությամբ յուրաքանչյուր կոմունիստ պարտավոր է օրինակ ծառայել մյուսներին, իր ետևից տանել անկուսակցականներին: Դա բխում է ՍՄԿԿ-ի՝ որպես սովետական ժողովրդի ավանգարդի, բուն էությունից: Հենց այս ոգով էլ իր գործունեությունն է ծավալում Երևանի էլեկտրալամպերի գործարանի կուսկազմակերպությունը: Դրա շնորհիվ նա դարձել է կոլեկտիվի ոգին, նրա հաջողությունների իսկական կազմակերպիչը:

Նույնը կարելի է ասել նաև Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի, Երևանի ալյումինի գործարանի, Ախուրյանի շրջանի Հովունիի կոլտնտեսության և այլ կուսկազմակերպությունների մասին, որոնց փորձը կրկին ու կրկին հաստատում է, թե յուրաքանչյուր կոմունիստի անձնական օրինակը, արտադրության մեջ նրա դրսևորած անձնուրացությունն ու նվիրվածությունը որքան մեծ ու ներգործուն միջոց են՝ աշխատողներին բարձր կարգապահության ոգով դաստիարակելու համար:

Մեր կուսակցությունը հսկայական կարևորություն է տալիս կարգապահությանը մեր հասարակական ու պետական կյանքի բոլոր ոլորտներում, առանց որի անհնար կլինեին սոցիալիստական շինարարության մեծագույն նվաճումները:

Իններորդ հնգամյակի իրականացումը մեծապես պայմանավորված է նաև կուսկազմակերպությունների կազմակերպական ու քաղաքական աշխատանքի մակարդակի բարձրացմամբ: ՍՄԿԿ Կենտկոմը խնդիր է դնում ամեն կերպ ամրապնդել կուսակցական ու պետական կարգապահությունը, յուրաքանչյուր կուսկազմակերպությունում ստեղծել բարձր պահանջկոտության ու պատասխանատվության, թերությունների նկատմամբ անհաշտվողականության, որոշումների կատարման նկատմամբ բազմակողմանի հսկողության ու ինքնահսկողության մթնոլորտ: Այդպիսի պայմաններում է հնարավոր կիրառել կուսակցական դեմոկրատիան, բարձրացնել կուսկազմակերպությունների մարտունակությունը, ուժեղացնել նրանց ներգործունությունը մարդկանց վրա մեր կյանքի բոլոր բնագավառներում:

---

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

## Փ Ո Թ Ո Ր Կ Ա Ծ Ի Ն Ը

### (Ն. Ա. ՕՍՏՐՈՎՍԿՈՒ ԾՆՆԴՅԱՆ 70-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)



«...Հեղափոխազանգը խուժում է քունիս մեջ, և հուզիչ տեսիլները վախվորած անհետանում են: Արթնանում եմ, և առաջին զգացողությունս անշարժորեն կաշկանդված մարմնի տառապալից ցավն է: Ուրեմն, մի քանի վայրկյան առաջվանը երազ էր, երբ ես ջանել և ուժեղ՝ մարտական ձիույգի վրա քամու պես սլանում էի ծագող արևին ընդառաջ: Աչքերս չեմ բացում: Պետք չէ. մի ակնթարթում վերհիշում եմ ամեն ինչ: Ութ տարի առաջ անողոք հիվանդությունն ինձ անկողնուն գամեց, մատնեց անշարժության, հանգցրեց աչքերս, շուրջբոլորս դարձնելով համատարած մթին գիշեր: Ո՜ւթ տարի...

Ֆիզիկական սուր ցավը վրա է տալիս համառ հարձակումով՝ դաժան ու անգութ: Հնազանդորեն դիմադրության առաջին քայլն եմ անում— սեղմում եմ ատամներս: Ինձ օգնության է գալիս երկրորդ հեռախոսազանգը: Գիտեմ՝ կյանքն ինձ դիմադրության է կոչում: Ներս է մտնում մայրս: Նա բերում է առավոտյան փոստը՝ թերթեր, գրքեր, նամակների տրցակ: Այսօր մի քանի հետաքրքիր հանդիպումներ են սպասվում: Կյանքն իր իրավունքների մեջ է մտնում: Կորչի՜ տառապանքը: Առավոտվա կարճ մարտը, ինչպես միշտ, ավարտվում է կյանքի հաղթանակով»:

Այս խոսքերը Նիկոլայ Օստրովսկին գրել է 1935 թ. աշնանը, երբ նրան քիչ էր մնացել ապրելու, շա՜տ քիչ. ընդամենը մեկ տարի: Մեկ տարի՝ դաժան գոտեմարտերում հաղթելու համար: Եվ եկավ հաղթանակի ժամը: Եկավ, երբ Օստրովսկին այլևս չկար, սակայն խըռտացման ու շիկացման բարձրակետի հասած նրա կյանքը ձեռք էր բերել դարերին ու սերունդներին հասցեագրված անցաթուղթ, դարձել լեգենդ, դպրոց ու դասագիրք: Անցնում են տասնամյակները, և Պավել Կորչագինն առաջվա նման մնում է երիտասարդ, ժողովուրդների պատմության այն հավերժական ուղեկիցներից, որոնց անունները ո՛չ միայն չեն խամրում ժամանակի ու տարածության մեջ, այլև ստանում են կրկնակի փայլ ու հմայք: Առավել այժմեական է հնչում մեծ գրողի ու կոմունիզմի մարտիկի պատգամը. «Մարդու համար ամենաթանկ բանը կյանքն է: Այն մի անգամ է տրվում և պետք է ապրել այնպես, որ տանջա-

լի ցավ չզգաս աննպատակ ապրած տարիների համար, որպեսզի քեզ չայրի ստոր և մանր անցյալի ամոթանքը և որպեսզի մեռնելիս կարողանաս ասել՝ ամբողջ կյանքս և ուժերս նվիրել եմ աշխարհում ամենագեղեցիկ բանին՝ մարդկության ազատագրման համար մղվող պայքարին: Եվ պետք է շտապել ապրել: Չէ՛ որ անհեթեթ մի հիվանդություն կամ որևէ ողբերգական պատահար կարող են ընդհատել կյանքդ»:

***

Մոսկվա: Գորկու փողոց № 14: Եռահարկ, հնակառույց շինություն: Այցելուներն անվերջ գալիս են պատանեկության խիզախ ձգտումների այս ներշնչարանը, գալիս են իրենց ռոմանտիկ երազների հետքերով: Կորչագինների նոր սերունդն է այդ: Բազմազգ ու բազմալեզու երիտասարդությունը, որն արդեն գիտե, թե ինչպես է կոփվում պողպատը. ազատության, երջանկության ու խաղաղության կոփածո պողպատը: Միության տարբեր ծայրերում նրանք հպարտությամբ են կրում Պավել Կորչագինի, Նիկոլայ Օստրովսկու անունները՝ լինի դա երիտասարդական-արտադրական բրիգադա, կոմերիտական-հարվածային կառույց, հնգամյակի առաջավոր տեղամաս...

Կորչագինն ապրում է, ապրում է և Օստրովսկին:

Տուն-թանգարանի մուտքին սպիտակ մարմարե հուշատախտակ կա: Հարթաքանդակը պատկերում է Օստրովսկու առնական կերպարը, և մակագրություն՝ «1935—1936 թթ. այստեղ ապրել և մահացել է գրող Ն. Ա. Օստրովսկին»:

Ցուցասրահներում ամփոփված են այն մասունքները, որ առնչվել են Օստրովսկու հետ. լուսանկարներ, գրքեր, աշխատություններ նրա մասին, հոդվածներ, փաստաթղթեր ու նամակներ, նրա գրքերը: Սրտահույզ նյութեր, որոնք կենդանացնում են նրա փոթորկածուփ կյանքի ոդիսականը:

«Մեր մանկությունը կապիտալիզմի լծի տակ էր»,— գրել է Օստրովսկին, և իրոք: Հյուսնի ու խոհարարուհու որդին, բնական է, չէր կարող անկնալել բարեկեցիկ կյանք: Ծննդավայրն էր Վոլինսկի նահանգի Վիլիյա գյուղակը: Երեք—չորս տարեկանում Կոլյան կարդալ ու հաշվել գիտեր: 1910 թվականին ծխական դպրոցի աշակերտ էր: Սակայն նրան վիճակված չէր երկար սովորել: Սկսվեց առաջին համաշխարհային պատերազմը: Գերմանացիներից փախչող բնակիչների հետ էր և Օստրովսկիների ընտանիքը: Նրանք հաստատվեցին Շեպետովկա երկաթուղային քաղաքում: Չնայած իր փոքրությանը, գավառաքաղաքը խաչում էր հինգ ճանապարհներ. այս հանգամանքը էլ նրան դարձրեց բազում արյունահեղ կռիվների թատերաբեմ: Տեղի դպրոցից հեռացվելուց հետո Նիկոլայը բախեց կյանքի համալսարանների դռները: Նախ ծառայեց կայարանի ռեստորանի խոհանոցում, հետո էլեկտրակայանում՝ որպես հնոցապանի օգնական: «Աշխատում էի օրական 13—15 ժամ: Բայց ինձ ծեծում էին: Ծեծում էին ոչ թե վատ աշխատանքի,— ես ազնիվ էի աշխատում,— այլ այն բանի համար, որ այնքան չէի տալիս, որքան տերը կկամենար վերցնել»: Տառապանքը շուտ հասունացրեց պատանուն: Եվ հենց այդ տառապանքն էլ պայքարի կոչեց նրան: Վաստակած չնչին կոպեկները կլանում էին գրքերը. «Ոչ մի բան այնպես չեմ սիրել, ինչպես գրքերը: Դրանց համար պատրաստ էի զոհաբերել ամեն ինչ: Խոհանոցում ծառայելիս իմ ճաշը տալիս էի լրագրավաճառին, որպեսզի նա ինձ թույլ տար գիշերային ընդմիջման կարճ ժամերին ամսագրեր ու թերթեր կարդալ»: Նրա սիրելի հերոսներն էին Գարիբալդին, Է. Վոյնիչի Բոռը: Որոշ ժամանակ անց, նա հնարավորություն ունեցավ ծանոթանալու Պուշկինի, Լերմոնտովի, Շևչենկոյի բանաստեղծություններին, որոնք հարստացրին Նիկոլայի ներաշխարհը, հունի մեջ դրին նրա խոհերը: 1917 թվականին նա հանդիպեց իր երազանքի հերոսներին. բոլշևիկներն էին նրանք: Նոր շրջան սկսվեց պատանու կյանքում: Մարտական առաջին մկրտությունը: Մեզնից ո՞վ չի հիշում այն դրվագը, երբ Շեպետովկայի խաչմերուկներից մեկում Նիկոլայն օգնում է փախչելու հեղկոմի անդամ Ֆյոդոր Պերեդրեյչուկին. այս և



այլ իրադարձություններ հետագայում դարձան **Ինչպես էր կոփվում պողպատը** գրքի հիմնախարիսխը: Հին լուսանկարները վերականգնում են Կոլյայի արտաքինը— լայն, բարձր ճակատ, արտահայտիչ աչքեր, սեղմված շուրթեր և ուժեղ ծնոտ, որոնք խոսում են նրա կամքի մասին:

Բուռն, մրրկահույզ ժամանակներ էին: Հոկտեմբերի հնակործան փոթորիկը հասավ և Շեպետովկա. Կարմիր բանակի զորամասերը 1919 թ. մտան քաղաք: «Երբ Լենինի կուսակցությունը մեր հայրերին կապիտալիզմի դեմ պայքարի զորակոչեց, մենք՝ ջահելները, գրեթե երեխաներ, նույնպես նետվեցինք մարտի հանուն մեր ջահելության, հանուն մեր երջանկության»: Գործելու, պայքարի կիրքն այրում էր Նիկոլային: Նա առաջիններից էր, որ համալրեց նոր ծնվող կոմերիտական կազմակերպության կորիզը: Իր հուշերում Ի. Լիննիկը հետևյալն է պատմում. «Շեպետովկայի հեղկոմ եկավ գոուզ մազերով, նիհար մի պատանյակ՝ Կոլյա Օստրովսկին: Նա համառորեն խնդրում էր իրեն աշխատանք տալ, քանի որ ինքը «չի կարող ձեռքերը ծալած նստել, երբ շուրջը ծփում է նոր, բուռն կյանքը...»:

15 տարին չէր բոլորել Օստրովսկին, երբ կամավոր մեկնեց ճակատ: Վճռվում էր հեղափոխության բախտը, և ժողովրդի անձնուրաց զավակը չէր կարող չլինել առաջավոր դիրքերում: «Այնպես պատահեց,— վերհիշում է նա,— որ մենք կոմերիտական տոմսերի հետ ստացանք հրացան և 200 փամփուշտ»: Կոտովսկու և Բուդյոննու հեծելազորային ջոկատներում Նիկոլայը կռվեց մինչև քաղաքացիական կռիվների ավարտը: 1920 թ. աշնանը վիրավորվեց. գլխի վերքը ծանր հետևանքներ թողեց. նա գրեթե լիովին կորցրեց աջ աչքի տեսողությունը և շուտով զորացրվեց: Հեռավոր Արևելքում մարտերը տակավին շարունակվում էին, երբ իր աշխատանքն սկսեց կոմերիտմիության III համագումարը: Շատ պատգամավորներ Մոսկվա էին գալիս հենց ռազմաճակատից: 1920 թ. հոկտեմբերի 20-ին համագումարում հանդես եկավ Վ. Ի. Լենինը. «Դուք պետք է կառուցեք կոմունիստական հասարակարգը»: Իլյիչի այս ավանդը դարձավ Օստրովսկու հետագա գործունեության նշանաբանը:

Դրվում էին նոր կյանքի հիմնաքարերը: Եվ Օստրովսկին աշխատանքի է անցնում նախ՝ Համառուսաստանական արտակարգ հանձնաժողովի խմբերում, ապա՝ հարավ-արևմտյան երկաթուղիների գլխավոր արհեստանոցներում, ուր ղեկավարում է կոմերիտական կազմակերպությունը: 1921 թ. աշնանը Կիևը վառելիքի մեծ պահանջ ուներ: Կուսակցության գավկոմը որոշեց շտապ նեղգիծ երկաթուղի կառուցել անտառից մինչև Բոյարկա կայարանը: Կառուցողների մեջ էր և Նիկոլայ Օստրովսկին: Այնուհետև նա կոմերիտմիության շրջկոմի քարտուղար էր Բերեզդովում և Իզյասլավում: Աշխատում էր անխոնջ, ինքնամոռաց: Ընկերներից ոչ ոք չգիտեր՝ նրա գրպանում բժշկական հանձնաժողովի որոշումն էր այն մասին, որ առաջին կարգի հաշմանդամ է. նա հրաժարվել էր դրա համար նշանակված թոշակից:

1924-ին Նիկոլայը մտնում է կուսակցության շարքերը և, չնայած սկըսվող անբուժելի հիվանդությանը (հոդերի ոսկրացում), շարունակում է ակտիվ աշխատանքը: «Կուսակցությունը սրբազան զգացմունք է դաստիարակել մեր հոգում,— ասում է Օստրովսկին,— պայքարել այնքան, քանի դեռ մեջդ կյանքի կայծ կա», և ապա՝ «Ով չի պայքարում, նա մխում է. սա օրենք է: Կեցցե՛ կյանքի հուրը»: Հիվանդությունը կոտրում է կանգուն մնալու նրա համառ ջանքերը, գամում անկողնուն, դատապարտում «անշարժության ողբերգությանը»: Ծակատագրի արհավիրքներն արիաբար տանող Օստրովսկուն նոր հարված էր սպասում— նա լրիվ կուրանում է, սակայն չի ընկճվում. «Ֆիզիկապես կորցրել եմ գրեթե ամեն ինչ, մնացել են սոսկ երիտասարդական անմարելի եռանդը և կուսակցությանը, իմ դասակարգին որևէ կերպ օգտակար լինելու ցանկությունս»:

Այդ ցանկությունն էլ նոր մարտերի տարավ նրան: 1927-ին նա ընդունվեց Մոսկվայի Սվերդլովի անվան կոմունիստական համալսարանի հեռակա բաժինը. դասախոսություններ էր լսում ռադիոյով, ուսումնասիրում մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները: Նոր մտահղացումը կրկնա-

պատկում է նրա կենսունակությունը— սկսում է գրել: Նա խոստովանում է. «Ինչպե՞ս եմ գրող դարձել: Հիվանդությունն ինձ շարքից հանեց: Ես չէի կարող ձեռ. մեջ լինել, այլևս չէի շարժվում, տեսնում: Կյանքն իմ առջև խնդիր դրեց տիրապետել նոր զենքի, որն ունակ լիներ ինձ վերադարձնելու բոլոր ճակատներում հարձակման անցած պրոլետարիատի շարքերը: Իսկ գրել կարելի է առանց շարժվելու և տեսնելու»: Եվ Օստրովսկին սկսեց գրել՝ անցյալի հերոսական օրինակը ներկայում պահելու, գալիքին թողնելու համար: «Իմ ցանկությունն էր ցույց տալ բանվորների երեխաների մանկությունն ու պատանեկությունը, նրանց վաղաժամ ծանր աշխատանքը և պատմել, թե ինչպես էին նրանք ներգրավվում դասակարգային պայքարում: Ես գրել եմ բացառապես փաստերի մասին. դա ինձ կաշկանդում էր: Երբեմն ես փաստի գերին էի դառնում: Գրել այլ կերպ՝ կնշանակեր հորինել, չպատմել այն, ինչ տեղի էր ունեցել»: Սակայն Օստրովսկին կույր էր և, բնականաբար, տողերը խառնվում էին, գրածը դառնում էր անընթեռնելի: Այդ ժամանակ օգնության ձեռք պարզեցին բարեկամները, հարազատները, ընկերները: Նա սկսեց թելադրել: Թելադրում էր Պավլկա Կորչագինի և նրա սերնդակիցների փոթորկածուփ սխրանքների մասին, որոնցից շատերի հեղինակն ինքն էր՝ իր անդրանիկ գրքի գլխավոր հերոսի նախատիպը: Պատմում էր կրքով, համոզչականությամբ, սկսնակի համար անսովոր արվեստով: 1932-ին լույս տեսավ վեպի առաջին մասը, երկու տարի անց՝ գիրքն ամբողջությամբ: «Կյանքի դռները լայնորեն բացվեցին իմ առջև: Իմ կրքոտ երազանքը՝ դառնալ պայքարի ակտիվ մասնակից, իրականացավ»,— գրել է Օստրովսկին: Նա իրեն համարում էր փոքրիկ անձրևակաթիլ, որն անդրադարձնում է կուսակցության արևը: Եվ կուսակցությունը ջերմ հոգատարությամբ շրջապատեց անձնուրաց մարտիկին: Նրան շնորհվեց զինվորական կոմիսարի կոչում: Ամենաբերկրալի օրերից մեկն էր այդ. նշանակում է՝ գրիչը լիովին փոխարինում է զենքին: **Ինչպես էր կոփվում պողպատը** գիրքը ջերմ արձագանք գտավ ընթերցողների և գրական շրջաններում: Օստրովսկին ամեն օր տասնյակ նամակներ էր ստանում: Դրանք սիրո, հպարտության, հիացմունքի ու խրախուսանքի տողեր էին, որոնք օգնում էին հիվանդ ու հաշմանդամ գրողին՝ չընկճվելու, չկորցնելու հոգու կորովը: «Սիրելի՛, թանկագի՛ն Նիկոլայ Ալեքսանդրովիչ,— գրում էր մի կոմերիտուհի:— Դուք, հավանաբար, բրիգադային միակ կոմիսարն եք, որը չի կարող ասել, թե բրիգադում քանի մարտիկ կա: Բայց, անշուշտ, Դուք սրտով զգում եք, թե դա ինչ բրիգադ է. չէ՛ որ դա ամբողջ կոմերիտմիությունն է, մեր անծայրածիր երկրի ողջ երիտասարդությունը (և ո՛չ միայն մեր երկրի): Չէ՛ որ երիտասարդները գրական և ոչ մի հերոսի հանդեպ չեն տածել այնքա՜ն ջերմություն, մտերմիկ գորով ու սեր, ինչպես այնքա՜ն հարազատ ու սիրելի Պավել Կորչագինի հանդեպ: Չէ՛ որ երիտասարդությունը ոչ մի գրողի չի սիրում այնպես ջերմ ու անկեղծ, ինչպես իր Նիկոլայ Օստրովսկուն: Այնպես անկեղծ, ջերմ ու քնքուշ, ինչպես ունակ է սիրելու ջահելությունը»:

Օստրովսկին՝ այդ անվեհեր քաղաքացին և մարտիկը, կոմունիստ էր ամենուր՝ տանը, աշխատանքում, կռվի և բարեկամության, սիրո և ատելության մեջ: Նա ստեղծեց մեր ժամանակակցի լիարյուն կերպարը: Պավել Կորչագինը պատմություն չէ. իր հոգևոր կերտվածքով, մտածողությամբ, գործելակերպով մեր օրերի ծնունդն է նա: Պավկայի կերպարում Օստրովսկին խտացրել է նոր հասարակարգ կերտող երիտասարդության մարդկային բոլոր լավագույն հատկանիշները, որոնք ձևավորվել ու թրծվել են պայքարի մեջ— բուռն հայրենասիրություն, անհուն նվիրվածություն կուսակցության գործին, պրոլետարական ինտերնացիոնալիզմ, անկոտրում առնականություն, անսասան կամք ու բարոյական մաքրություն: «Ինձ համակել է միայն մի ցանկություն— տալ երիտասարդ մարտիկի կերպարը, որին ձգտի նմանվել երիտասարդությունը»: Կորչագինը վառ, հերոսական անհատականություն է: Իսկ հերոսական բնավորությունները հասարակական միջավայրի արդյունք են: Պատահական չէ, որ եթե Պավկայի համար աշխատանքը մինչ



հեղափոխությունը սոսկ գոյության աղբյուր էր, ապա սոցիալիզմի պայմաններում նոր նշանակություն է ստանում: Կերպարը գրավում է իր ճշմարտացիությամբ, լուսավոր գալիքի հանդեպ անխորտակ հավատով: Հեղինակը կարողացավ առավել քան որևէ մեկը, հստակ դրսևորել մեր հասարակության բուն էությունը: Գիրքն առանձնանում է ո՛չ միայն խոր բովանդակությամբ, այլև գեղարվեստական անառարկելի արժանիքներով:

1935 թ. հոկտեմբերի 1-ին Օստրովսկին պարգևատրվեց Լենինի շքանշանով: Որոշման մեջ գրված էր. «...քաղաքացիական կռիվների հերոս մասնակցին, որը սովետական իշխանության համար առողջությունը կորցնելով՝ գեղարվեստական խոսքի զենքով անձնազոհ պայքարում է սոցիալիզմի համար, **Ինչպես էր կոփվում պողպատը** տաղանդավոր ստեղծագործության հեղինակին»: Իր իսկ բառերով ասած՝ անկողինն ունենալով մշտական բնակատեղի, Օստրովսկին ձեռնամուխ եղավ երկրորդ գրքին: Իսկ կյանքն օրեցօր դառնանում էր. «Անտանելի է, երբ մի ատամը ցավում է, իսկ երբ հազար ատամ է ցավում, խայտառակություն է: Բայց ես այդ հազարը դուրս եմ նետել երկաթե աքցանով. աշխատանքում ես բարձր եմ հիվանդությունից: Արհամարհում եմ այն, ծիծաղում եմ նրա վրա»: Ծանր օրերին բարեկամները միշտ նրա կողքին էին: Գրաքննադատ Սեմյոն Տրեգուբի վկայությամբ, 1936 թ. ամռանը անվայրէջք հերոսական թռիչքից հետո Վալերի Չկալովն ասել է ընկերներին. «Մեր առաջին քայլը Սոչիում կլինի այն, որ միասին կգնանք Օստրովսկու մոտ, տեսնելու կենդանի Կորչագինին»: Օստրովսկին խոստովանում է, որ այդ հանդիպումները մեծապես օգնում են իրեն: Նա մաքառում է, բաց աչքերով նայելով մահվանը: Նրան նոր հաղթանակ էր սպասում. ավարտված է **Փոթորկածիններ** եռամաս վեպի առաջին մասը: Օստրովսկին սիրում էր հաճախ կրկնել, որ իր գրքերի տպաքանակները կարմիրբանակայիններ են, որոնց ինքը զորավարի նման մարտի է տանում թշնամու դեմ: Նա լավ էր գիտակցում, թե ինչ մարտեր են սպասվում նոր սերնդին, չէր կորցնում ժամանակի զգացողությունը: Կ. Զելինսկին վերհիշում է հետաքրքրական մի մանրամասն. «Մի՛ զարմացիր,— բացատրում է նրան Օստրովսկին,— որ ծանոթանալիս՝ ես անպայման բռնում եմ ձեռքը: Այս սրիկա բնությունը մարդկանց հետ շփվելու բավական քիչ միջոցներ է թողել ինձ: Բայց չէ՛ որ մեր բոլշևիկ եղբորն այնքան էլ հեշտ չէ ծնկի բերել: Ես նրան, այդ բնությանը, հաղթել եմ: Մարդկանց ես զգում եմ՝ նույնիսկ ձեռքը բռնելով»:

1935 թ. իր ստեղծագործական հաշվետվության մեջ Նիկոլայ Օստրովսկին գրում է. «Աշխատանքս կառուցում եմ ըստ պլանի: Ճիշտ է, ես հնգամյակներ չունեմ. չեմ համարձակվում հույս դնել երկար ժամկետի վրա: Ծրագրում եմ մի տարվա կյանք... Իմ աշխատանքային օրը 10—12 ժամ է: Պետք է շտապեմ ապրել»: Եվ նա շտապում էր, խորապես համոզված, որ չկան այնպիսի ամրոցներ, որոնք բոլշևիկները չկարողանան գրավել:

Օստրովսկին սիրով է խոսում իր նոր գրքի հերոսների մասին, նրանց կանխատեսում հիանալի ապագա: Արիությունը ծնվում է պայքարում: Իսկ նրա հերոսներն անվերջ պայքարի մեջ են: Անդրեյ Պտախան մարդկանց համար երջանկություն է երազում: «Նրա կողքին է,— գրում է Օստրովսկին,— սևաչյա Օլեսյա Կովալյոն: Ես սիրում եմ այդ աղջկան, գիտեմ, նրանից լավ կոմերիտական դուրս կգա»: **Փոթորկածինները** թեմատիկ առումով նախորդ գրքի երկվորյակն է. «Երկու գրքերն էլ արյունակից են: Միայն թե **Ինչպես էր կոփվում պողպատում** սեղմ ներկայացրել եմ մի ամբողջ սերնդի 16 տարվա պատմությունը, իսկ նոր վեպում ծավալվում է հեղափոխական պայքարի 3—4 ամիս տևած էպիզոդներից միայն մեկը»:

1936 թ. նոյեմբերին Օստրովսկու բնակարանում կայացավ ՍՍՀՄ գրողների միության նախագահության հերթական նիստը. քննարկվում էր **Փոթորկածինների** առաջին մասը: Օստրովսկին ասաց. «Խնդրում եմ բոլշևիկի նման, գուցե և շատ անողոք ու անխնա, բացահայտեք բոլոր այն թերություններն ու վրիպումները, որ թույլ եմ տվել իմ նոր գործում: Կան մի շարք հանգամանքներ, որոնք հատկապես

պահանջում են անողոք քննադատություն: Ընկերները գիտեն իմ կյանքը, նրա բոլոր յուրահատկությունները: Եվ վախենում եմ, որ այդ արգելառիթ դառնա անողոք քննադատության համար: Այդ չպետք է լինի... Ինձնից շա՜տ պահանջեք, առավե՜լ շատ: ...Սկսե՛ք հրետանային կրակը»: Մասնակիցները գովեստով խոսեցին գրքի արժանիքների մասին:

Մահից մի քանի շաբաթ առաջ ռադիոյի թղթակիցը Օստրովսկուն հարցնում է նրա ծրագրերի մասին: Մեծ լավատեսությամբ գրողը պատասխանում է. «Ուզում եմ գիրք ստեղծել երեխաների համար: Այնուհետև գրել ֆանտաստիկ վեպ, իսկ հետո՝ **Ինչպես էր կոփվում պողպատի** վերջին հատորը— **Կորչագինի երջանկությունը** վերնագրով: Բացի այդ, մտադիր եմ զբաղվել ինքնակրթությամբ, սովորել մինչև կյանքիս վերջին օրը»: Սակայն շատ մոտ էր նրա կյանքի վերջին օրը. Օստրովսկուն վիճակված չէր սահմանել «երկարակեցության ռեկորդ»: Իր ընկերներից մեկին նա գրում է. «Եթե քեզ զանգահարեն և հաղորդեն իմ մահվան լուրը, չհավատաս մինչև չգաս ու չտեսնես: Իսկ եթե գաս ու տեսնես, որ մեռած եմ, մի՛ գրիր ինչպես սովորական մահախոսականներում՝ «Նա դեռ կարող էր էլի ապրել»: Իմացի՜ր, եթե օրգանիզմիս թելուց մի բջիջը կարողանար ապրել, կարողանար դիմադրել, ես կապրեի ու կդիմադրեի»:

1936 թ. դեկտեմբերի 22-ին Օստրովսկու սիրտը դադարեց բաբախելուց: Օ. Գոնչարը բավականին դիպուկ է գնահատել Օստրովսկու կյանքի ու գործի կարևորությունը սերունդների համար. «Չէ՛ որ նա չի մահացել: Մեծ հայրենականի տարիներին մեզ հետ էր կոմունիզմի անմահ զինվորը: Նա մեզ հետ էր խրամատներում, մեզ կոռով ու ոգևորություն էր հաղորդում ամենադժվարին պահերին: Ժամանակն անզոր է, նա ապրում է մեզ հետ, կապրի և ապագայում»:

**ԼԵՎՈՆ ԱՆԱՆՅԱՆ**

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Կ. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ):

Адрес редакции: 375033 Ереван 33, Барекамутян, 59 г.
Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

*ՎՖ 05439 Պատվեր 1705 Թղթի չափսը 70×108 1/16 Տիրաժ 13.400 Գինը 20 կոպ.*

*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 17/X-1974 թ.*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ալ. Խաչատրյան փող. № 28:*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՃԱՌԱԳԱՅԹԸ ՉԱՓՈՒՄ Է ՋԵՐՄՈՒԹՅՈՒՆԸ

*Լենինգրադի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրատեխնիկական ինստիտուտի մասնագետները, մարմնի ջերմությունը չափելու համար, սովորական սնդիկային ջերմաչափի փոխարեն, վիրաբույժների պատվերով պատրաստել են ջերմային ճառագայթման տարածական ֆիքսման վրա հիմնված չափիչ սարք: Խիստ ճշգրիտ ու հուսալի աշխատող այս նոր ջերմաչափը անփոխարինելի է բարդ վիրահատությունների ժամանակ:*

## ԱՆՎՏԱՆԳ ԼԱՊՏԵՐ

*Չեխոսլովակիայի ածխահանքերում փորձարկվում է հանքագործի անվտանգ լապտեր, որն առանց էլեկտրասնման տասնյակ տարիներ կարող է ճառագայթել պայծառ լույս: Այդ լապտերների գաղտնիքը ռադիոակտիվ կրիպտոնի մեջ է, որն անընդհատ կարող է արձակել բետա ճառագայթներ: Ընկնելով կոլբայի ներքին պատերը ծածկող ֆոսֆորացվող նյութի վրա՝ դրանք ստիպում են նրան լույս ճառագայթել: Կրիպտոնի ճառագայթումը լամպում անվտանգ է հանքագործի համար: Եթե կոլբան ջարդվում է, ապա կրիպտոնը արագ հեռացվում է հանքահորի օդափոխանակման սիստեմով:*

## ԹՈՒՂԹ՝ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*Ռումինական «Լետյա» ցելյուլոզա թղթի կոմբինատում պետական արխիվի գլխավոր դիրեկցիայի և Յասիի պոլիտեխնիկական ինստիտուտի մշակած ռեցեպտով սկսել են թողարկել չծերացող թուղթ: Այն նախատեսված է արխիվային փաստաթղթերի տպագրության համար, 100 տարի պահպանում է իր առաձգականությունը և չի դեղնում:*

## «ՁՈԴՎԱԾ» ԿՈՍՏՅՈՒՄՆԵՐ

*Ամերիկյան գյուտարար Պեյին ստեղծել է ուլտրաձայնային կարի մեքենա, որի համար պետք չէ ոչ ասեղ, ոչ թել: Մեքենայի սիրտը արագ տատանվող առանցքն է, որը տարբեր կտորների թելերը միացնում է միմյանց: Շփման ժամանակ առաջացած ջերմությունը հալում է թելը և միմյանց զոդում կտորները: Ցավոք, բնական մետաքսը և բամբակյա գործվածքը մեքենայի վրա հնարավոր չէ կարել: Դրա փոխարեն մեքենայի արտադրողականությունը շատ բարձր է սինթետիկ թելից գործվածքներ կարելիս: Պոլիէֆիրային գործվածքից կամ նեյլոնից կտորների ձուլման արագությունը հասնում է րոպեում 15 մետրի: Մեքենայի թերությունը գյուտարարը համարում է նրա բարձր արժեքը— 2500 դոլար:*

## «ՍՈՆՈԹԵՐՄ»

*ԳՖՀ-ում մշակված այս սարքը ավտոմատ բացում է ջրատարի կռանը, եթե ձեռքդ մոտեցնում ես նրան, դադարեցնում է ջրի հոսքը, երբ ձեռքդ հեռացնում ես բռնակից: Ուլտրաձայնային լոկատոր է այդ, որը գործում է ի պատասխան ջրատարի բռնակին մոտեցված առարկայի արտացոլած ուլտրաձայնային ճառագայթի: «Սոնոթերմը» ունի թերմոստատ, որը պահպանում է ջրի անհրաժեշտ ջերմությունը: Այդպիսի բռնակները հարմար են հատկապես այնտեղ, ուր պահանջվում են մաքուր ձեռքեր— լաբորատորիաներում, բժշկության, սննդարդյունաբերության մեջ:*

Գինը՝ 20 կ.

Индекс 77783

# ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵ՛Ք

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ

# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ»

ՏՆՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳՐԻՆ

*ԱՄՍԱԳԻՐԸ*

*հրապարակում է հոդվածներ ՍՄԿԿ և ՀԿԿ պատմության, հեղափոխական շարժման, քաղաքատնտեսության, փիլիսոփայության, արդյունաբերության և գյուղատնտեսության էկոնոմիկայի, միջազգային կյանքի վերաբերյալ.*

*— լուսաբանում է հանրապետությունում կոմունիստական շինարարության պրակտիկան, զետեղում նյութեր կուսակցական, կոմերիտական, արհմիութենական և սովետական շինարարության, պրոպագանդիստական և մասսայական-քաղաքական աշխատանքի հարցերի մասին: Տպագրում կուլուսցանցի ունկնդիրներին օգնող նյութեր.*

*— լուսաբանում է գիտության, գրականության ու արվեստի զարգացման հարցերը, տպագրում կոնսուլտացիաներ, մամուլի տեսություններ, գրախոսություններ, պատասխանում ընթերցողների հարցերին.*

*— տպագրում է նյութեր եղբայրական սովետական հանրապետությունների, սոցիալիստական երկրների, միջազգային կոմունիստական շարժման մասին:*

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ԱՐԺԵՔԸ

*Մեկ տարին— 2 ռ. 40 կ.*

*Վեց ամիսը— 1 ռ. 20 կ.*

*Երեք ամիսը— 60 կ.*

*ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է՝*

*կապի գրասենյակներում, բաժանմունքներում, «Սոյուզպեչատ»-ի քաղաքային բաժիններում, գործարաններում, ֆաբրիկաներում, հիմնարկ-ձեռնարկություններում, ուսումնական հաստատություններում, սովխոզներում, կոլտնտեսություններում՝ մամուլի հասարակական լիազորների միջոցով:*

*«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»*